# ԶԵԿՈՒՅՑ

Գարուն է: Մայիսյան ջերմ շունչը տարածվել է ամենուր, ծաղկել են ծառերը, մարգագետինները ծածկըվել են թավիշ կանաչով:

Փողոցներով անցնում են պիոներական շարքերը, ու զիլ հնչում են շեփորները, քաղաքով մեկ վըրընգում է պիոներական ուրախ երգը:

Պիոներներն այսօր տոնում են իրենց կազմակերպության քառասնամյակը, նրանք իրենց կատարած գործերի մասին այսօր զեկույց են տալիս Հայրենիքին, հարազատ կուսակցությանը: Արդեն երկու տարի է, ինչ նրանք պատրաստվում էին այսօրվան, երկու տարի է, ինչ նրանք ստարտ են վերցրել, որպեսզի իրենց քառասնամյակին հասնեն նորանոր նվաճումներով, պիոներական նորանոր գործերով:

Ինչե՞ր ասես չեն արել նրանք, որպեսզի այսօր պարզ ճակատով դուրս գան փողոց, ինչե՛ր ասես չեն արել նրանք, որպեսզի այսօր ավելի համարձակ, ավելի խրոխտ հընչի նրանց երգը, և որպեսզի իրավունք ձեռք բերեն ասելու.

—Մենք հարյուր հազարավոր տոննա մետաղի ջարդոն ենք հավաքել, որպեսզի մեր երկրի երկաթուղիներով սլանան պիոներական գնացքներն ու ծովերում լողան պիոներական նավերը, համայնական դաշտերում հռնդան պիոներական տրակտորներն ու կոմբայնները:

Մենք հարյուր հազարավոր գառներ ու հորթեր, խոզեր ու ընտանի թռչուններ ենք խնամել, որպեսզի մեր երկրում անսպառ լինի միսը, կաթը ու ձուն, որպեսզի առատություն լինի մեր Հայրենիքում:

Մենք հարյուր հազարավոր ծառեր ենք տնկել, որպեսզի նրանք պիոներական երգով խշշան մեր Հայրենիքի ճանապարհներին. մենք ան-

ՄԱՅԻՍ
№ 5 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՀԱՅՐԵՆԻՔԻՆ




տառներում անթիվ-անհամար վայրի ծառեր ենք պատվաստել, որպեսզի մեր երկրում առատ լինեն տանձն ու խնձորը, սալորն ու նուռը:

Մենք մեր ձեռքով վերանորոգել ենք մեր դպրոցները, հազարավոր սպորտ-հրապարակներ ենք կառուցել, օգնել ենք կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ բերքն անկորուստ հավաքելու համար, որպեսզի ավելի հարուստ ու հզոր լինի մեր Հայրենիքը:

Մենք ջանք չենք խնայել, որպեսզի ավելի շատ գիտելիքներ ձեռք բերենք՝ բազմակողմանի զարգացած, կոմունիզմ կառուցող մարդ դառնալու համար: Մենք գիտենք, որ մեր Հայրենիքին հենց այդպիսի մարդիկ են հարկավոր:

Հարազատ կուսակցություն, մենք գիտենք, որ դու մեզ համար, մեր ապագայի համար ես խաղաղություն նվաճել և ահա մենք դիմում ենք քեզ մեր առաջին խոսքով: Այն բոլոր մեծ գործերի համար, որ դու արել ես մեզ համար, մեր նկատմամբ տածած քո մեծ սիրո, քո հոգատարության համար մենք ասում ենք քեզ՝ Շնորհակալություն:

Մենք ամեն ինչ կանենք, որպեսզի արժանի դառնանք քեզ, արժանի լինենք քո մեծ գործի շարունակողը կոչվելու համար, Մեծ Լենինի անունը կրելու համար...

Գարուն է ... Գարնան հետ հնչում է պիոներական զրնգուն երգը, պիոներական երդումը, և բոլորը, բոլորը, ովքեր դուրս են եկել փողոց սիրելի պիոներների քառասնամյակը տոնելու համար, գիտեն, որ կարմիր փողկապավոր այս փոքրիկները իրենց խոստումը կկատարեն: Քառասուն տարիների ընթացքում նրանք իրենց մեծ ու փոքր գործերով ապացուցել են այդ:



# ԿԱՐՄԻՐ ՎԶԿԱՊԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Պատահում էր, որ դպրոց գնալիս Տղան մոռանում էր վերցնել վզկապը։ Ավագ ջոկատավարը հարցնում էր.

— Ո՞ւր է քո վզկապը։

— Մոռացել եմ։

Խաղալիս, նույնիսկ դասի ժամանակ վզկապը նեղում էր տղայի վիզը, և պատահում էր, որ նա հանում էր վզից ու դնում էր գրպանը։

— Գրպանումդ չի՞։

— Գրպանումս չի,—ասում էր տղան և շուռ էր տալիս գրպանը։

Ջոկատավարը ասում էր.

— Պիոները միշտ պիտի կրի վզկապը՝ դա նրա արժանապատվությունն է։

Թանաքի բծերով, կավիճոտ, նկատելի խունացած մի վզկապ էր դա, և որովհետև տղան դասերից հետո հանում էր վզից ու դնում էր գրպանը՝ ճմրթված էր։ Չնայած երկրորդ ամիսն էր, ինչ տղան կրում էր իր այդ առաջին կարմիր վզկապը՝ ծայրերն արդեն մաշված էին, հավանաբար նրանից, որ նա սովոր էր դասի ժամերին դրանք կծոտել։ Տանը վզկապը սովորաբար ընկած էր մնում տղայի անկյունում հին խաղալիքների, գրքերի ու տետրերի հետ, և առավոտները նա հաճախ մոռանում էր վերցնել հետը։

— Դու արժանապատվություն չունես,—ասում էր ավագ ջոկատավարը։

Տղան զգում էր, որ ամենևին էլ այդպես չէ. տղան նախ՝ լավ չէր հասկանում, թե ինչ է արժանապատվությունը, որ ինքը չուներ և ապա չէր հասկանում, թե ինչ կապ կարող էր լինել արժանապատվության և այդ եռանկյունի կարմիր կտորի միջև։ Մի ժամանակ նա իր վզին չէր կրում այդ կտորը, և նրան ոչ ոք չէր ասում, թե նա արժանապատվություն չունի։ Տղան զգում էր, որ իր մեջ ոչինչ չի փոխվել, այլ փոխվել էր ինչ-որ բան իր և մարդկանց հարաբերությունների մեջ, վերաբերմունքում, և փոխվել էր՝ այդ կարմիր վզկապը կապելուց հետո։ Ինքը մնացել է նույնը. առաջվանը, և առաջվա նման մայրը ասում էր նրան.

— Գիտե՞ս, դպրոցում ինչ են ասում քո մասին, «Անտանելի չար տղա է»— ահա թե ինչ են ասում։ Կամ ինչպես առաջ, հարցնում էր.

— Ինչո՞ւ ես նորից Անուշին ծեծել։

Տղան Անուշին չէր ծեծել. բավական էր, որ տղան ձեռք տար նրա երկար հյուսքերին, որպեսզի նա տզզար։ Անուշը լացկան էր, և տղային դա հետաքրքրում էր։ Հետաքրքիր էր, թե ինչպես չնչին կատակից այդ աղջիկը կարող էր տզզալ. եթե Անուշը այդպես հեշտությամբ չտզզար, եթե նրան լացացնելը այդպես դյուրին չլիներ, տղան կձանձրանար և նրան չէր նեղացնի։

— Խոստացիր, որ սա վերջին անգամը կլինի,— ասում էր մայրը։

Տղան զգում էր, որ եթե խոստանա էլ, այդ վերջին անգամը չի լինի. որպեսզի դա լիներ վերջին անգամը, Անուշը այդքան լացկան չպիտի լիներ։

Եվ, ինչպես առաջ, մայրը ասում էր.

— Այսօր նորից «երկու» ես ստացել։ Վերջապես, ո՞ր օրվանից դու պիտի լավ սովորես։

Տղան ոչ մի կերպ արդարանալ չէր կարողանում. գնահատականը դրվում էր օրագրի մեջ, և մայրն ամեն օր ստուգում էր օրագիրը, բայց տղան զարմանում էր, թե ինչո՞ւ մայրն ինքն էլ չի հասկանում. որ միանգամից լավ սովորելը հնարավոր չէ, և ոչինչ չէր խոստանում։

Եվ տղան գիտեր, որ ինքը անտանելի չար տղա է, որ ինքը վատ է սովորում, բայց թե ինքը ինչ-



պես է, որ արժանապատվություն չունի, նա ոչ մի կերպ չէր կարողանում հասկանալ։

Մի անգամ դասամիջոցին տղային մոտեցավ Մինասը։ Մինասը նստում էր ամենաառաջին նստարանին, բայց նա նույնպես լավ չէր սովորում և չար տղա էր։ Մինասը կարողանում էր ասել

*սրամիտ խոսքեր, և այդ խոսքերը նույնիսկ դասատուներին ծիծաղ էին պատճառում։ Տղան գիտեր, որ հենց դրա համար էլ դասարանում Մինասին վատ սովորելու ու չարության համար շատ չէին հանդիմանում և ներողամիտ էին վերաբերվում։ Տղային այդ թվում էր վիրավորական, և հենց դրա համար էլ նա չէր սիրում այդ Մինասին։ Տղան ինքն էլ կարող էր ասել սրամիտ խոսքեր, կարող էր, եթե մտածեր, եթե ջանար, և գուցե ավելի սրամիտ, քան կարող էր ասել Մինասը, բայց տղան չէր ուզում, որ ուրիշներին ծիծաղեցնելու համար չհանդիմանեին իրեն և առհասարակ ներողամիտ վերաբերվեին։ Դա նրան թվում էր վիրավորական, և տղան երբեք ծիծաղելի խոսքեր չէր ասում, և երբ Մինասն ասում էր այդպիսի խոսքեր, նա երբեք չէր ծիծաղում։*

*— Արի ծայր խաղանք,— ասաց Մինասը։*

*Դասամիջոցներին տղան ծայր խաղում էր, խաղում էր իր դասընկերների հետ և մյուս դասարանների տղաների հետ. բայց Մինասի հետ նա խաղալ չէր ուզում, նա Մինասին չէր սիրում, և որպեսզի նրան գոնե մի չնչին չափով վիրավորի, նա ասաց.*

*— Ես քեզ հետ ծայր չեմ խաղա, դու վիրավորվել չգիտես։*

*Տղան տեսավ, որ Մինասը ապշել է ու վիրավորվել և ավելի վիրավորելու համար ուղղակի ասաց.*

*— Ծաղրածո՛ւ։*

*— Սրա՛ն նայեք,— բարձրաձայն ասաց Մինասը,— թթու դրած վարունգի նման միշտ լուրջ է, կարծես ամբողջ աշխարհի հարկը սրանից են պահանջում։*

*Տղան բռնեց Մինասի օձիքից, Մինասը տղայից բարձրահասակ էր, բայց տղան ավելի մկանուտ էր, տղան Մինասին հպեց պատին և առաջ քաշեց, Մինասը ճանկեց նրա մազերը, տղան ազատ ձեռքով հարվածեց աչքից, այտից քիչ ներքև։ Նրանք գրկեցին իրար, Մինասը կծեց տղայի ձեռքը, և երկուսով թավալվեցին հատակին։ Երեխաները հավաքվեցին նրանց շուրջը, ավագ ջոկատավարը հասավ, բաժանեց իրարից։ Տղան լուռ էր ու զայրացած, իսկ Մինասը հևալով ասաց.*

*— Նա ինձ խփեց և ասաց ծաղրածու։*

*Տղան հևում էր, զայրացած էր և զգում էր, որ չի կարող կարճ ժամանակում, և մանավանդ, մի երկու բառով հասկացնել ավագ ջոկատավարին, թե ինչ էր եղել և ինչպես էր եղել։*

*— Դո՞ւ խփեցիր,— հարցրեց ավագ ջոկատավարը։*

*— Այո՛,— պատասխանեց տղան։*

*—. Եվ ասացիր՝ ծաղրածո՞ւ։*

*— Ասացի։*

*— Հանի՛ր վզկապդ,— տղան զգաց, որ ջոկատավարը մի պահ երկմտեց, և կարծեց, թե նա չի պնդի. դրա համար էլ հապաղեց.— լսո՞ւմ ես, հանի՛ր վզկապդ, դու արժանի չես, լսո՞ւմ ես։ Հանի՛ր վզկապդ։*

*Տղան միայն հիմա զգաց, որ հաստատ պահանջում է, որ վզկապը հանի։*

*Վզկապը պտտվել էր տղայի վզով, կապը դարձել էր մի կողմ, հասել էր ուսին և ծայրերը կախվել էին նրա ուսի վրայից։ Տղան մի ձեռքով բաց արեց կապը, ծայրից բռնած՝ ձեռքը դարձրեց գլխի շուրջը, քաշեց, վզից հանեց վզկապը և պարզեց ջոկատավարին։ Վզկապը թանաքոտ էր, ճմրթված, ծայրերը մաշված էին, և ավագ ջոկատավարը ծայրից բռնած բարձրացրեց.*

*— Վզկապն էլ իր նման է դարձել, տեսե՛ք։*

*Տղան սպասում էր, թե էլ ուրիշ ի՞նչ են ուզելու իրենից կամ ի՞նչ են ասելու. բայց ոչ ոք ուրիշ ոչինչ չասաց և չպահանջեց։*

*Դասի ժամանակ դասատուն նրան հարցրեց.*

*— Ո՞ւր է քո վզկապը։*

*Սովորաբար այսպիսի դեպքերում տղան գըրպանից կամ գրադարակից հանում էր վզկապը և կապում էր վզին։ Հիմա նա շփոթվեց և չգիտեր ինչ պատասխանի։*

*— Նա վզկապ կրելու իրավունք չունի։*

*Եվ սա ասաց ոչ թե Մինասը, որին տղան չէր սիրում, և որը տղային չէր սիրում, այլ՝ Կարենը, թխահեր, խոհեմ Կարենը, որի հետ տղան սովորաբար ծայր էր խաղում և որին նվիրել էր իր հղկած դեղձի կորիզներից շատերը։ Կարենն այդ*

## ԾԱՂԻԿՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Դպրոցին կից երկար ձգվում է ջերմոցը կամ ինչպես սիրում են պիոներներն ասել՝ ծաղիկների աշխարհը։ Ձմռանն անգամ այստեղ բուրում են ծաղիկները, փարթամորեն աճում են գեղեցիկ աքլորակատարը, արմավները, աստղածաղիկն ու ալենդրը և շատ ուրիշ բույսեր։

Երևանի Կռիլովի անվան դպրոցի պիոներները գուրգուրանքով խնամում, ջրում են իրենց սիրելի ծաղիկները։ Նրանք 350 ավտոմեքենա հող են բերել, փռել դըպրոցից քիչ հեռու և ծրաջան աշխատանքով ստեղծել ծաղիկների այս հիասքանչ աշխարհը։

Եվ հիմա, երբ ծաղիկները օրորում են իրենց գլխիկները, կարծես երգեցիկ խումբ կազմած մեղմիկ շշնջում են. «Շնորհակալություն պիոներներին, որոնք իրենց փոքրիկ ձեռքերով ջրել են մեզ, խնամել, ու մենք մեծացել, հասակ ենք առել»։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՃՇՄԱՐՏԱԽՈՍ ԼՐԱԳԻՐԸ

Կրեմլ, 1918 թվական։ Իր աշխատասենյակում նստած է մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը և լրագիր է կարդում։ Նա իր ամբողջ ուշադրությունը կենտրոնացրել է առաջին էջի ներքևում տպագրված փոքրածավալ թղթակցությունների վրա։ Կարդում է խորասուզված ու կլանված։ Ինչպես միշտ, այդ օրն էլ նա անհամբերությամբ է սպասել լրագրի թարմ համարին։ Լենինը ժամ առաջ շտապում էր իմանալ, թե ինչի մասին են գրում իր հիմնադրած պետության բանվորներն ու գյուղացիները։ Լրագրի ճակատին գրված է „Правда". դա նրա անունն է, որ ռուսերեն նշանակում է ճշմարտություն։ Այդ լրագիրը, իհարկե, քեզ անծանոթ չէ։ Դա նույն «Պրավդա» թերթն է, որ հաճախ տեսնում ես քո ծնողների, ուսուցիչների, ավագ եղբայրների ու քույրերի մոտ։ Դա նույն «Պրավդան» է, որն ընթերցելու համար ցուցափեղկերի մոտ հավաքվում են մեծ թվով մարդիկ։

«Պրավդան» մեր երկրում լույս տեսնող բազմաքանակ լրագրերի մայր-լրագիրն է։ Նա արդեն հիսուն տարեկան է և շատ հարուստ ու փառապանծ կենսագրություն ունի։

«Պրավդայի» առաջին համարը լույս է տեսել 1912 թվականի մայիսի 5-ին Պետերբուրգում (այժմ Լենինգրադ)։ «Պրավդան» ծնվեց այն օրերին, երբ Ռուսաստանում նոր ուժով սկիզբ էր առել բանվորների հեղափոխական շարժումը։

Բանվորական ճշմարտախոս լրագրի հանդես գալը իսկական տոն դարձավ Ռուսաստանի աշխատավորության համար։ Եվ պատահական չէ, որ 1914 թվականից սկսած, «Պրավդայի» լույս ընծայման օրը՝ մայիսի 5-ը նշվում է որպես բանվորական մամուլի տոն։

«Պրավդան» հսկայական դեր խաղաց Հոկտեմբերյան հեղափոխության կազմակերպման գործում, պայքարի նախապատրաստելով աշխատավոր մասսաներին։ Այդ լրագրի միջոցով բոլշևիկների կուսակցությունը մշտական կապ էր պահպանում բանվորական լայն շրջանների հետ։

«Պրավդայի» յուրաքանչյուր համարում տպագրվում էին տասնյակ բանվորական թղթակցություններ։ Դրանցում նկարագրվում էր բանվորների ծանր, զրկանքներով լի կյանքը, ոստիկանների և հարստահարիչների կամայականություններն ու գազանությունները։ Երկու տարվա ընթացքում «Պրավդայում» հրատարակվել է մոտ 17 հազար բանվորական թղթակցություն։ Շատ կարճ ժամանակում «Պրավդան» մեծ հեղինակություն ձեռք բերեց։ Նրանում բանվորները տեսնում էին իրենց հարազատ օրգանը, իրենց շահերի համարձակ պաշտպանին։ Լրագրի շուրջը ստեղծվեց կայուն թղթակիցների մի մեծ բանակ, որը պայքարում էր լենինյան գաղափարների իրականացման համար։

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում «Պրավդային»։ Հինգ տարվա ընթացքում, մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, նա «Պրավդայի» համար գրել է ավելի քան 280 հոդված։ Լենինի հոդվածները որոշում էին լրագրի բնույթն ու քաղաքական ուղղությունը։ Լենինից բացի, հոդվածներով հանդես էին գալիս նրա զինակիցներն ու աշակերտները։

*ասաց կարծես խռոված, կարծես օտարոտի, կողմնակի, և Տղան իրեն, չգիտես ինչու, այդ պահին զգաց մեղավոր և անարժան. ի՞նչ էր եղել, ինչո՞ւ էր փոխվել նրանց բոլորի վերաբերմունքը, ի՞նչ էր փոխվել իր մեջ, և արդյո՞ք ինքը փոխվել էր։ Տղան զգում էր, որ ինքը մնացել է նույնը. առաջ էլ ինքը լավ չէր սովորում, առաջ էլ ինքը անկարգ էր. միայն՝ հիմա իր վզին չկար կարմիր վզկապը։*

*— Քեզ կարգին չես պահում, խելոք չես մընում,— ասաց դասատուն։*

*Տղան գիտեր, որ դասարանում իր հետ նստած ընկերներից ոմանք, հենց նույն Մինասը, հենց նույն Կարենը՛ նույնպես անկարգ էին և լավ չէին սովորում, սակայն նրանցից ոչ մեկի վզից ոչ ոք չէր հանել վզկապը։ Տղան մտածեց, որ իր հետ անարդարացի են վարվել։*

*Դասերից հետո պիտի գնային մետաղի ջարդոն հավաքելու. երբ հավաքվեցին դպրոցի բակում, Մինասը ցույց տալով տղային՝ ավագ ջոկատավարին ասաց.*

*— Նա պիոներ չէ, թող մեզ հետ չգա։*

*— Ճի՛շտ է,— ասաց ջոկատավարը,— շարքից դուրս արի։*

*Տղան կհակառակվեր, կմնար շարքում, եթե միայն ավագ ջոկատավարը և այդ Մինասը չուզեին, որ ինքը մնար, բայց տղան զգում էր, որ շարքում կանգնած իր ընկերներից ոչ մեկը իրեն չէր պաշտպանի, որ եթե ոչ իր համար, ապա՝ նրանց բոլորի համար, և ավագ ջոկատավարի համար կար մի ինչ-որ բան, որով ինքը, այդ ինչ-որ մի կարևոր բանով հիմա ցածր էր համարվում նրանցից, բոլորից, նույնիսկ Մինասից, և հասկանում էր, որ հենց դրա համար էլ իրեն բոլորի հետ մետաղի ջարդոն հավաքելուն մասնակցելու արժանի չէին համարում։ Տղան համոզված էր, որ ինքը գոնե այդ Մինասից ինչ-որ բանով ավելի բարձր է, նա գիտեր և ընդունում էր, որ ինքը անկարգ տղա է, որ ինքը լավ չի սովորում,՛ բայց չէ՞ որ նրանց մեջ էլ կային անկարգ և իրենից ավելի վատ սովորող տղաներ։ Տղան հասկանում էր և համոզված էր, որ*




գերի, ամրապնդման, տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները լուծելու գործում։ Հայրենական պատերազմի ահեղ օրերին, ռազմաճակատում ու խորը թիկունքում, սովետական մարդիկ անհամբերությամբ սպասում էին «Պրավդային», որը նրանց հասցնում էր կուսակցության ճշմարիտ խոսքը։ Եվ այժմ էլ, երբ մեր ժողովուրդը կառուցում է մարդկության լուսավոր ապագան՝ կոմունիստական հասարակարգ, «Պրավդան» դարձյալ մեր կուսակցության հզոր զենքն է, նրա մարտական օգնականը։ «Պրավդան» իր էջերում պատմում է աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունների ու անձնվեր աշխատանքի մասին, մեր խիզախ գիտնականների ու կոնստրուկտորների նոր հայտնագործությունների մասին, մեր գրողների, նկարիչների ու երաժիշտների մասին։

Ցարական կառավարությունը շատ էր վախենում «Պրավդայից» և բոլոր միջոցներով փորձում էր փակել այն։ Միայն մի քանի տարում ութ անգամ փակեցին «Պրավդան», բայց կրկին այն լույս էր տեսնում ուրիշ անուններով։

Սովետական իշխանության հաստատումից հետո «Պրավդան» շատ մեծ գործ կատարեց նոր կար-

«Պրավդան» բաժանորդներ ու բարեկամներ ունի աշխարհի ամենատարբեր վայրերում և օրական լույս է տեսնում 6 միլիոն 300 հազար օրինակ։

Իր կատարած վիթխարի աշխատանքի համար «Պրավդան» վայելում է մեծ հեղինակություն և արժանացել է բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի։

*իր և նրանց միջև եղած միակ տարբերությունն այն է, որ իրենից առել էին կարմիր վզկապը։ Եվ նա զգաց, թե ինչ է նշանակում այդ վզկապը՝ և՛ իր, և՛ նրանցից յուրաքանչյուրի համար։ Դա իսկապես, որ իր պատիվն էր, արժանապատվությունը։ Տղան հասկացավ, թե որքան կարևոր էր կարմիր վզկապը, թե ինչու էին ասում, որ այն՝ կարմիր դրոշի մասնիկն է, և թե ինչու այն իրեն հանձնել էին հանդիսավոր, առանձնահատուկ իրադրության մեջ։ Նա համոզված էր, որ եթե ինքը արել էր մի զանցանք, որի համար արժեր իր վզից վզկապը հանել, ապա այդ պիտի չարվեր այդպես հեշտ, հապճեպ և, մանավանդ, այդպես անզգույշ։ Եթե հիմա վզկապը լիներ իր վզին, և որևէ մեկը պահանջեր իրենից, ով ուզում է լինի՝ նա չէր տա, կհաներ վզից, կդներ գրպանը ու չէր տա։*

*Տանը նա մորը ասաց, որ կորցրել է իր վզկապը, պետք է նորը գնել։*

*— Միևնույն է,—ասաց մայրը,—դու երկու օրում կդարձնես լաթ կամ կկորցնես։*

*— Էլ չեմ կորցնի,— խոստացավ տղան։*

*Առհասարակ տղան շատ հազվադեպ էր որևէ բան խոստանում, և երբ պատահում էր, որ խոստանում էր, ապա մայրը միշտ մտածում էր. «Ես նրան գիտեմ, երբ նա մի բան խոստացավ, կանի»։*

*Հետևյալ օրը դասարանում տղան իր տեղում նստած էր՝ վզին մի նոր վզկապ կապած. վզկապը արդուկած էր, այդպես արդուկված, մաքուր ու կարմիր վզկապով՝ տղային ոչ ոք չէր հիշում և թվում էր, թե նրա մեջ կար մի ինչ-որ անծանոթ ու նոր բան, ինչ-որ մի նոր բան։*

*Դասամիջոցին ավագ ջոկատավարը նկատեց տղային և նրա նոր վզկապը ու ոչինչ չասաց. տղան սպասում էր, որ նա ինչ-որ բան պիտի ասի. տղան զգում էր, որ վզկապը հանելը և նորից կապելը աննշան բաներ չէին, որ կարելի լիներ չխոսել դրա մասին, որ կարելի լիներ չնկատել դրանք։ Սակայն ջոկատավարն այնպես ցույց տվեց, թե չի նկատում և ոչինչ չասաց։*

*Հիմա տղան վզին միշտ կրում է կարմիր վզկապը։*

# ԱՐԱԳԱԾ



## ԼԵՌԱՆ ԳԱԳԱԹԻՆ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Աստղիկը մի անգամ էլ նայեց ոտքերից հանած տրեխներին, ինքնիրեն ծիծաղեց. տրեխները հրեց մահճակալի տակ այնպես, որ չերևա, մտավ անկողին, հոգնած ոտքերը երկարացրեց և գլուխը ծածկեց վերմակով։ Նա շատ էր ուզում քնել, հանգստանալ, բայց քունը չէր տանում. երբ փակում էր աչքերը, նրան թվում էր, թե նորից բարձրանում են Արագածի լանջերով…

Ահա և լեռնից վար հոսող գետակը՝ փրփուրը բերնին, խելագար արագությամբ լերկ ժայռերին խփվելով թռչում է ներքև։ Աստղիկը մի պահ լսում է ջրի միալար խշշոցը և երեխաների ուրախ աղմուկն ու բղավոցը՝ «վա՜յ, տարա՜վ, ջուրը տարա՜վ…»

… Կանաչ լեռնալանջով շարժվում էր նրանց խումբը։ Աստղիկը գնում էր վերջից։ Նրա ոտքերը ծակում էին փշերը, մանր, սուր ավազները…

Աստղիկը նստեց անկողնու մեջ և նայեց շուրջը. նա այնպես էր ուզում պատմել մեկին, բայց ու՞մ, տանը ոչ ոք չկար, մայրիկն ու հայրիկը հյուր էին գնացել, կողքի մահճակալի մեջ մուշ-մուշ քնած էր փոքրիկ քույրը։

* * *

Երկու օր առաջ վերջացել էր ուսումնական տարին։ Եվ ի՜նչ ուրախություն, 7-րդ «բ» դասարանցիներից ոչ ոք չէր մնացել նույն դասարանում, ոչ ոք աշնանային աշխատանք չէր ստացել։ Ուրախ էին բոլորը։

— Եկե՛ք արշավ կազմակերպենք,— անսպասելիորեն հայտարարեց ավագ ջոկատավարը։

— Ու՞ր, ո՞րտեղ…

— Դեպի Արագածի գագաթը,— պատասխանեց ջոկատավարը։

— Հիանալի՜ է, լա՜վ է, հրաշալի՜ է…— ձայն տվին երեխաներն այս ու այն կողմից և շարունակեցին ջրել դպրոցի բակի ծաղկանոցն ու ծառերը։

— Դուք էլ եք գալու՞,— Արուսյակին ու Աստղիկին մոտենալով հարցրեց նույն դասարանցի Վարդանը։

ԱՐՏԱՇԵՍ ՊՈՂՈՍՅԱՆ

## ԼՈՒՌ Է

Լուռ է պատանին. կարծես ինքն իրեն
Հաշիվ է տալիս առաջին անգամ.
Ինչքա՜ն օրեր են սլացել արդեն
Երդման պահերից պիոներական։

Ո՞վ գիտե՝ քանի՜ վզկապ է մաշել
Վզկապ կրելու առաջին օրից՝
Ամեն մեկի մեջ անմոռաց հուշեր,
Ամեն մեկի մեջ օրեր անթախիծ։

Բայց նայում է նա երկար այս մեկին.

— Քո ի՞նչ գործն է,— սրտնեղած պատասխանեց Աստղիկն ու քաշեց ընկերուհու թևից,— գնանք։

Վարդանը բութ մատը դրեց քթին և թափահարեց ձեռքը։ «Ձեզ շատ եք երևակայում, բան եմ հարցնում, չեք էլ պատասխանում»։ Աղջիկներն այլևս չէին լսում նրան։ Նրանք թևանցուկ քայլեցին ծաղկանոցի երկայնքով և նստեցին առաջին իսկ պատահած նստարանին։

Արուսյակը ոգևորված շարունակում էր արշավի մասին խոսել, իսկ Աստղիկը լուռ էր։

— Հը, ի՞նչ է պատահել, ինչու՞ չես խոսում։

— Չգիտե՛մ, ուզում եմ հրաժարվել արշավին մասնակցելուց։

— Ինչու՞։

— Չգիտե՛մ։

— Իսկ ես գիտեմ, ուզու՞մ ես ասեմ։ Դու նեղացած ես Վարդանից։

— Այո՛, ասենք թե այդպես է, ի՞նչ կա որ։

— Դու սխալվում ես, Աստղիկ, նա պարզապես կատակ է անում քեզ հետ, և նա ու՞մ հետ կատակ չի անում որ…



# ՊԱՏԱՆԻՆ

Չէ՞ որ դա վերջին վզկապն է նրա։
Վաղուց է հայտնի այս խոսքն ամենքին.
Այսօրվա ծիլը ցողունն է վաղվա։

Այո՛, մտել է նա ա՛յլ մի հասակ,
Միտքը նախրում է ավելի հեռու
Եվ ժամանակն է՝ արդեն կրծքի տակ
Կոմերիտական տոմսը կրելու։

Լողում են անցած օրերը մտքում,
Ու խորհում է նա, խորհում է երկար,
Թե ինքն ինչպես է կատարել կյանքում
Երդումն իր ազնիվ, պիոներական։

Գովասանքներ է միշտ էլ ստացել,
Եղել կարգապահ, չի շեղվել ճամփից։
Իսկ թե երբեմն սխալ է գործել՝
Ամաչել է իր կարմիր վզկապից։

Նա շոշափում է վզկապը վերջին
Ու կարծես ասում նրան քնքշաբար.
«Դո՛ւ ես իմ կյանքի կրակն առաջին,
Շնորհակալ եմ քեզանից, եղբա՛յր»։

Ճամփան ձգվում է, ճամփան չունի վերջ,
Առջևում են դեռ թռիչք ու սխրանք։
Լուռ է պատանին. այդ լռության մեջ
Շառաչում է թունդ մի ուրիշ հասակ։

— Ո՛չ, նա իմ նկատմամբ թշնամաբար է տրամադրված, ամեն կերպ չարամտորեն աշխատում է ծաղրել ինձ...

— Դե լա՛վ, լա՛վ, կարծես ես քո կողքին չեմ նստած, «թշնամաբա՞ր, չարամտորե՞ն»։

— Իսկ դու միշտ նրան ես պաշտպանում, կարծես քեզ քիչ է ձեռ առնում։

— Ես չեմ նեղանում, նա պարզապես սիրում է կատակներ անել և ուրիշ ոչինչ։

— Դե, իհարկե, կատակ էր նաև այն, որ ազգանունս՝ Բաղոյանը կրճատել Բղո է դարձրել և երկու տարի եռևիցս Բղո է կանչում, իսկ անցյալ տարի շորիցս աղվեսի պոչ էր կպցրել. վեր կացա դաս պատասխանելու, բոլորը ծիծաղեցին։

Արուսյակը ծիծաղում էր։

— Ազնիվ պիոներական խոսք, ես դրանք շուտ եմ մոռանում։ Նա լավ ընկեր է...

— Իսկ ես բոլորովին էլ չեմ մոռանում, բանն այն է, որ մարդ չի կարող դրա հետ խռով մնալ, զոռով կգա կխոսի։ «Պիոներիս նայիր, խռով է պահում»— կասի նա, և ինչքան էլ չցանկանաս, այնպիսի բան կանի, որ ծիծաղից կթուլանաս։

Ընկերների զրույցն ընդհատվեց. ցնցուղից ջու՛րը թափվում էր ուղիղ նրանց գլխին։ Նրանք ճչալով վեր թռան։ Նոր ծաղկած ծառերի արանքից երևաց Վարդանի դեմքը...

Դե, իհարկե, էլ ո՞վ պետք է լիներ...

* * *

Արթնացել է արևը։ Թռչունները, ծառերը, ծաղիկները՝ բոլորը երգում են արևի երգը, արևի համար. երգում է անքուն առուն, նրա ձայնը ձուլվում է օդում ճախրող թռչունների երգին, որոնք սլանում են վե՛ր, վե՛ր, որ արևը լավ լսի նրանց երգը։

Արևի հետ արթնացել են նաև նրանք՝ 7-րդ «բ» դասարանցիները։ Նրանք քայլում են ցողոտ կանաչների վրայով ու երգում...

Կարկաչահոս աղբյուրի պես
Հնչում է զիլ երգը մեր,
Մենք հպարտ ենք, որ ամեն տեղ
Կանչում են մեզ պիոներներ։

Նրանց երգն էլ է արևին հասնում, և հպարտ է արևը, որ իր ոսկի շողերից են ծնվել նրանց կարմիր վզկապները։

Ի՜նչ հրաշալի է լուսաբացը, պիոներները քայլում են սարալանջով, հիացած՝ զարթնած բնության գեղեցկություններով։ Ինչ լա՜վ է, երբ լուսաբացն սկսվում է պայծառ արևի սքանչելի շողերի լույսով։



Գարնան սկզբներին հրաշալի են Արագածի լանջերը՝ հազար գույնի ծաղիկներ, ծնկներին հասնող կանաչ, կարմիր կակաչներ... Եվ սառն աղբյուրներ, որոնց մեջ մի պահ ձեռքդ պահել չես կարող, և կաթնաղբյուրներ, կաթի նման սպիտակ ջրով...

Հանկարծ ընդհատվում է երգը, խումբը խառնվում է իրար։ Նրանք պետք է անցնեն գետը, որի ջրերը գալիս են բարձունքից և սրընթաց արագությամբ թռչում ցած՝ դեպի կալանտասության դաշտերը։ Ծփծաղելով, իրար հրելով, մեծ-մեծ քարերի վրայից երեխաները անցնում էին մյուս ափը։

— Վա՜յ, տարա՜վ, ջուրը տարա՜վ,— գոռացին երեխաներից մի քանիսը։ Այդ այն պահին էր, երբ ջրից ուզում էին անցնել Աստղիկն ու Արուսյակը։

Տղաները խառնվեցին իրար, ջուրն այնպիսի արագությամբ իր հետ տարավ Աստղիկի ոտքից դուրս թռած կոշիկը, որ հետ բերել անհնարին էր։

Արագածի լանջը կանաչ էր, բայց Աստղիկի ոտքը ծակում էին փշերն ու ավազի մանր կտորները, շուտով գուլպան էլ ծակվեց, և քայլելն ավելի դժվարացավ։ Ընկերներից շատերն առաջարկեցին իրենց կոշիկները, բայց Աստղիկը հրաժարվեց։ «Բոլորդ էլ ինձ նման չե՞ք, ուրիշ բան, եթե ավելորդ լինեք»։ Ավագ ջոկատավարը խորհուրդ տվեց ոտքը կտորով փաթաթել։ Այդպես էլ դժվար էր քայլելը, որովհետև անվերջ քանդվում էր ոտքի փաթաթանը։

Լուռ էր կատակասեր Վարդանը։

— Ոչինչ, քիչ մնաց,— ընկերուհուն հանգստացնում էր Արուսյակը։

— Այնպես ես խոսում, կարծես լեռան գագաթը մեր տունն է, հետո ի՞նչ, որ հասնում ենք, իսկ ինչպե՞ս պիտի վերադառնամ։

Ընկերուհիները ծիծաղեցին։



Մոտ էր լեռան գագաթը, ահա և նրանց ոտքի տակ է ձյան սպիտակ ծածկոցը, որը մի փոքր առաջ թվում էր ամպերին ձուլված։

Խումբը, ջոկատավարի գլխավորությամբ, թեքվեց լեռան արևելյան կողմը. այնտեղ ձյուն չկար։ Բոլորն էլ անհանգստանում էին Աստղիկի համար, բայց ինչպե՞ս օգնել։ Խումբը պետք է գիշերեր լեռան գագաթին։ Տեղ հասնելով նրանք պատսպարվեցին մի մեծ քերծի տակ, որ և՛ տաք էր և՛ չոր։

Իսկույն մեջքի վրայից ցած իջեցրին ճանապարհորդական պայուսակները։ Առաջին գործն եղավ խարույկ պատրաստել։ Չոր փայտերն սկսեցին ճարճատյունով վառվել, շուրջը տարածելով ուրախության կայծեր։ Աղջիկները գործի անցան. սպիտակ սփռոցի վրա շարեցին զանազան ուտելիքներ...

Արևը մայր էր մտնում...

Փոքր անց, տղաները երկու վրան խփեցին, մեկն՝ իրենց, մյուսը աղջիկների համար։ Բայց մեղք էր, կարծես, թողնել խարույկը, աստղալից երկինքն ու մտնել վրանների տակ։ Մինչև ուշ գիշեր չէին դադարում նրանց ուրախ երգերն ու պարերը։ Վերջապես ջոկատավարը պահանջեց՝ գնալ վրանները և հանգստանալ։

Դեռ ճարճատում էին փայտերը, երբ կամացուկ վրանից դուրս եկան Վարդանն ու Ավագը։ Վերջինս կրակի վրա փայտեր ավելացրեց, իսկ Վարդանը բլուրի նման կուտակված ճամպրուկների միջից ջոկեց իր պայուսակը։

— Լա՛վ մտածիր, մայրդ չի՞ բարկանա,— նրա ականջի տակ շշնջաց Ավագը։

— Ասացի՝ ոչ։ Այս պայուսակը մայրս վաղուց դեն գցած կլիներ, եթե ես չասեի. «Թող մնա, մայրիկ, ճիշտ է, հին է, բայց կաշվից է պատրաստված, մի օր մի բանի պետք կգա»։

Վարդանը մկրատով կտրեց պայուսակի երեսները։

— Իսկ դու կկարողանա՞ս կարգին տրեխ կարել,— նորից փսփսաց Ավագը։

— Կարող եմ, իհարկե։

— Իսկ դու որտե՞ղ ես սովորել։

— Ասեմ, հիշու՞մ ես, մի ժամանակ ես պարի խմբակում էի և հովիվների պարն էի պարում, այդ ժամանակ ինձ տրեխ էր հարկավոր, և հայրս մի երեկո նստեց ու կարեց, ես էլ նստած էի նրա կողքին, սովորեցի։ Հայրս ասում է, երբ

ինքը փոքր է եղել, իրենց գյուղում բոլորն էլ տրեխ են հագել։

Վարդանը, կաշին բարակ-բարակ կտրատելով, թելեր պատրաստեց, հետո բզով ծակծկեց կաշվի ծայրերը։ Նախ կարեց տրեխների քթերը, հետո կողքերը։

Ավագը կրակի վրա փայտ էր ավելացնում և ոգևորված դիտում Վարդանին։

— Ուզու՞մ ես՝ դու գնա քնիր,— մի տրեխը կարելուց հետո ասաց Վարդանը։

— Չէ՛, քունս չի տանում, համ էլ վախենում եմ գործի հետ ընկնես ու մրսես։

Վարդանն ու Ավագը քնեցին այն ժամանակ, երբ տրեխները պատրաստ էին։

* * *

Լուսաբաց... Այս անգամ արևն այնքան մոտիկից էր դուրս գալիս՝ նրանց թվում էր, եթե ձեռքները մեկնեն, կհասնեն, կբռնեն արևի գունդը։

Աստղիկն աչքերը բաց անելուն պես հիշեց կորած կոշիկը, ոտաբոբիկ ոտքը և սուր փշերը... Ինչպե՞ս պիտի իջնի լեռը՝ ոտաբոբիկ քայլի մի ամբողջ օր...

Քիչ այն կողմ, մյուս վրանի առաջ խմբված տղաները հետաքրքրությամբ դիտում էին ավագ ջոկատավարի ձեռքի տրեխները։

— Իսկ թե՛ ովքեր են կարել այս տրեխները, դա որոշ ժամանակ պետք է գաղտնի մնա,— բարձրաձայն ասաց ջոկատավարը։

Տղաներից ու աղջիկներից մի քանիսը սկսեցին փորձել... հագան, հանեցին։

— Շատ լավն է, հրաշալի է, իսկական տրեխ է...— ասում էին այս ու այն կողմից։

— Աստղիկ, կուզե՞ս դու մեր կոշիկները հագի, մենք—այս տրեխները,— առաջարկեցին ոմանք։

— Ո՛չ։ Ինձ համար են կարված, ես էլ կհագնեմ,— ասաց Աստղիկն ու ուրախ-ուրախ տրեխները հագավ։

Խարույկը նորից վառեցին. կաթսայի մեջ սկսեց խաշվել ոչխարի միսը։ Երեխաները լիցքային վարժություններ կատարելուց հետո լվացվեցին, սանրվեցին և նստոտեցին սպիտակ սփռոցի շուրջը։

Մի փոքր անց, խումբը շարժվում էր լեռնալանջով ցած։

Աստղիկն ու Արուսյակը քայլում էին կողք-կողքի և աշխատում էին գուշակել, թե ում գործը կլինեն տրեխները։

Գյուտ արած մարդու նման, հանկարծ Արուսյակը վեր թռավ, բռնեց ընկերուհուն և ամուր-ամուր սեղմեց իրեն։

— Ինչպե՞ս գլխի չէինք ընկնում, մի նայի՛ր, տես, ո՞ւր է Վարդանի պայուսակը։

Ժպիտը սառեց Աստղիկի դեմքին, նա նայեց ոտքերին...

— Այո, նրա պայուսակն էր տրեխ դարձել...

— Տեսնու՞մ ես, բա որ ասում էի,— ընկերուհու ականջին շշնջաց Արուսյակը։

* * *

Առավոտյան Աստղիկի մայրիկը հատակը մաքրելիս, խոզանակով դուրս քաշեց աղջկա մահճակալի տակ դրված տրեխներն ու մնաց զարմացած։

Այդ պահին Աստղիկը բացեց աչքերն ու ժպտաց...



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԿԱՐԵՎՈՐ հանձնարարություն

ԱԼԵՔՍԱՆԴՐ ՎՈՅԻՆՈՎ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ֆեդյան հանդերձարանում վերարկուն էր հագնում, երբ ավագ ջոկատավարը ձայն տվեց նրան.

— Ֆեդյա,— Կլավդիա Սեմյոնովնան ձեռքի արագ շարժումով նրան իր մոտ կանչեց։— Գտիր Լևուշկինին, և երկուսով ինձ մոտ... Կարևոր հանձնարարություն եմ տալու։

Կարևոր հանձնարարությո՛ւն։ Այս խոսքը միշտ էլ խոստումնալից ու խորհրդավոր է թվում։ Ֆեդյան գլխապատառ վազեց Յուրիկին փնտրելու և նրան գտավ դասարանում. գերազանցիկ Գալյա Զամյատինայի օրագրից նա արտագրում էր վաղվա դասերը։

— Յուրիկ, շու՛տ, Կլավդիա Սեմյոնովնան կանչում է։ Կարևոր հանձնարարությու՜ն,— գոռաց Ֆեդյան։

Անսպասելիությունից ցնցվեց Յուրիկի ձեռքը, և թանաքի կաթիլը շաղ եկավ բացված էջերին։

Յուրիկը մի քանի վայրկյան ապուշ կտրած նայում էր թանաքոտված էջերին, իսկ հետո այնպիսի վճռականությամբ նետվեց դեպի դուռը, որ եթե Ֆեդյան փոքր-ինչ մոտ կանգնած լիներ, ոտքով կխփեր նրան։ Բայց Ֆեդյան արդեն սլանում էր միջանցքով։ Հետո նա աստիճաններով վազեց ներքև, այնտեղ, ուր սպասում էր Կլավդիա Սեմյոնովնան։

Յուրիկն շտապում էր հասնել Ֆեդյային, որ մի լավ հասցներ. ձեռքերը քոր էին գալիս։ Նա այնպես թափով նետվեց դեպի ավագ ջոկատավարը, որ վերջինս նույնիսկ մի կողմ քաշվեց։ Բայց Ֆեդյայի համար Յուրիկն արդեն վտանգավոր չէր։

Զարմանալի կերպով փոխվում է Յուրիկը, երբ գտնվում է մի մարդու կողքին, որին պետք է ենթարկվի։

— Դուք ինձ կանչե՞լ եք, Կլավդիա Սեմյոնովնա,— հարցրեց Յուրիկը սիրալիր ժպիտով։

— Ինչու՞ էիք աստիճանների վրա աղմուկ բարձրացրել։ Ի՞նչ է, ուզում եք, որ վարքի գնահատականը իջնի՞։— Կլավդիա Սեմյոնովնայի ձայնի մեջ բարկություն կար։

Ավագ ջոկատավարը նրանց տարավ պիոներական սենյակ։ Յուրիկը բռունցքով թաքուն սպառնում էր Ֆեդյային։

— Երևի նորից թուղթ պիտի հավաքենք,— կամաց փնթփնթաց Յուրիկը, երբ Կլավդիա Սեմյոնովնան բաց էր անում պիոներական սենյակի դուռը։

Տղաները ներս մտան։ Ընդարձակ սենյակի անկյունում գտնվում էր կարմիր դրոշը, որ նվիրել էին շեֆ գործարանի բանվորները։ Պատերին փակցրած էին անցած տարիների տուրիստական արշավների լուսանկարները, իսկ սեղաններին, պատերի երկայնքով դասավորված էին երեխաների ձեռքերով պատրաստած իրերը։ Այստեղ կային և՛ ինքնաթիռի մոդելներ, և՛ ֆիզիկայի սարքեր, և՛ կավածեփ արձաններ, և՛ գեղեցիկ ձեռագործներ։ Դրանք պատրաստողներից շատերը վաղուց արդեն ավարտել էին դպրոցը։

— Ահա թե ինչ, տղանե՛ր,— ասաց Կլավդիա Սեմյոնովնան.— այն հանձնարարությունը, որ



ծեզ եմ տալու, խիստ կարևոր է։— Եվ մի պահ լռելուց հետո հանդիսավոր կերպով ավելացրեց.— Ձեզ նշանակում եմ պարեկ։

— Հսկենք, որ փողոցը ճիշտ անցնե՞ն,— հարցրեց Յուրիկը։

— Մի՛ ընդհատիր, այլ լսի՛ր,— բարկացավ ավագ ջոկատավարը։— Երկուսով կբարձրանաք «Ա» տրամվայը։ Գիտե՞ք, թե որտեղով է անցնում։

— Կենդանաբանական այգու մոտով,— ասաց Ֆեդյան։

— Ճիշտ է։ Կբարձրանաք առաջին վագոնը, որտեղ տոմսավաճառ չկա, և ուղևորներն իրենք են վճարում։ Կկանգնեք դրամարկղի մոտ և կսկսեք ուշի-ուշով նայել։ Եթե նկատեք, որ մեկնումեկը...— նա տատանվեց. բառեր էր փնտրում.— դե, դուք պետք է քաղաքավարի կերպով նրանց հիշեցնեք, որ հարկավոր է վճարել։

Յուրիկի աչքերում կատաղի կրակներ վառվեցին։

— Մի՛ անհանգստացեք, կլավդիա Սեմյոնովնա բոլորն էլ կվճարեն։ Եվ կարմիր թևկապներ էլ կտա՞ք։

— Ոչ մի թևկապ։ Ոչ ոք նախապես չպետք է իմանա, որ դուք այդտեղ եք։ Երկու ժամ կերթևեկեք տրամվայով, իսկ առավոտյան կգաք ինձ զեկուցելու։

— Այ սա գո՜րծ է,— ասաց Յուրիկը, երբ Ֆեդյայի հետ դուրս եկան փողոց։— Ես սուլիչ ունեմ։ Այնպես որ կկանգնեցնենք վագոնը և անպիտաններին կուղարկենք միլիցիա։

Ամբողջ ճանապարհին նա անվերջ շատախոսում էր այն մասին, որ վերջապես իրենց էլ իսկական գործ հանձնարարեցին։

— Արի տուն չգնանք,— հանկարծ կանգ առավ Յուրիկը։— Թե չէ՝ մայրս կարող է չթողնի. կըստիպի ճաշել, դասերը պատրաստել։

Նրանք կանգնած էին Ֆեդյայենց տան մոտ։ Ֆեդյան շատ քաղցած էր։ Գրքերով լի պայուսակը ավելի էր ծանրացել։ Բայց Յուրիկի խոսքերի մեջ էլ ճշմարտություն կար։ Դեռ հայտնի չէ, թե իր մայրը ի՞նչ կասի, երբ իմանա, որ տղան երթևեկելու է լեփ-լեցուն տրամվայով...

Յուրիկը գրպանից հանե՛ց երկու մետաղադրամ։

— Արի բուլկի գնենք, ոչինչ, երկու ժամում քաղցից չենք մեռնի։

Նրանք խանութից մի բուլկի վերցրին, երկու կես արին և սկսեցին քայլել դեպի Ապստամբության հրապարակը։ Ֆեդյան երբեք այդպիսի առատաձեռնություն չէր սպասում Յուրիկից։

Նախաճաշի հետ հաշիվները մաքրեցին նախքան Բարիկադների փողոցին հասնելը։ Կենդանաբանական այգու մոտ Յուրիկը հարցրեց.

— Հը՞, երկուսով պիտի դրամարկղի մո՞տ կանգնենք, թե՞ մեկս վագոնի սկզբում, մյուսը՝ վերջում։— Հանկարծ նա մի պահ կանգ առավ և բարկացած շրփացրեց իր ծոծրակին։— Վա՜յ, սուլիչը չվերցրի։

— Ինչպե՞ս վերցնեիր, երբ վախենում էիր մայրդ չթողնի,— հիշեցրեց Ֆեդյան։

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՍԵՐՈՒՆԴ

### ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Երջանկության սերունդը մեր
Սրտում գարուն ունի պայծառ,
Նա քառասուն տարի ապրել
Ու մանուկ է մնում դարձյալ։
Զարդարել է աշխարհն էլի
Այսօր նա իր գարնան շնչով
Եվ փառապանծ տարիների
Իր քառասուն ծաղկեփնջով։
Քայլել ենք մենք մեծ Լենինի
Պատգամներին հավատարիմ,
Կարծես ազնիվ երգում լինի
Մեր պատմության ամեն տարին...
Մեր ժպիտով պիտի խնդա
Կյանքը երկրի ամեն մասում,
Մեզ աշխարհում հերոսության
Ճամփաներն են դեռ սպասում։
Պիտի երգեն շռայլ բերքով
Անապատում օրերն ամռան,
Մի ծաղիկը մեր տքնանքով
Հազար ծաղիկ պիտի դառնա։
Անգամ երկրի ցուրտ բևեռում
Գարնան երգեր պիտի հնչեն,
Ողջ աշխարհի մոտն ու հեռուն
Եղբայրությամբ պիտի շնչեն։
Տիեզերքի գրկում մենք դեռ
Նոր ճամփաներ պիտի բանանք,
«Վոստոկ—2» ունենք արդեն,
«Վոստոկ—100»-ը կունենանք։
Ու մեր երկրից նոր հրթիռներ
Աղավնու պես պիտի սուրան
Դեպի Լուսին ու Յուպիտեր,
Յուպիտերից դեպի Ուրան։
Պիտի դնենք քարը քարին
Եվ պալատներ կերտենք քարով,
Մեզ մեր ապրած ամեն տարին
Կբարձրացնի մի ողջ դարով։
Եվ սերունդը մեր բախտավոր
Թեկուզ ապրի հազար տարի,
Կյանքը պիտի ծաղիկներով
Ու մանկությամբ միշտ զարդարի։

— Ճի՛շտ է,— համաձայնեց Յուրիկը։— Գիտե՞ս ինչ, այնուամենայնիվ արի միասին կանգնենք դրամարկղի մոտ։ Հանկարծ ու հարբածի մեկը հարձակվի մեզ վրա...

Ֆեդյայի սիրտն սկսեց խփել։ Կարևոր հանձնարարությունն անմիջապես պակաս գրավիչ թվաց։

Տրամվայի կանգառում հավաքվել էր մոտ քսան մարդ։ Ըստ երևույթին տրամվայ վաղուց չկար։ Տղաներն սկսեցին զննել սպասողներին և գուշակել, թե նրանցից ո՞վ կարող է խանգարել կարգը։

— Պետք է հետևել ա՛յ այս երկուսին։ Հավանաբար պիտի նվնվան, թե մայրիկը փող չի տվել,— ընկերոջ ականջին շշնջաց Յուրիկը և հայացքով ցույց տվեց երկու տղայի։

Անծանոթ տղաները նկատեցին նրանց այդ հետաքրքրությունը։ Երկու կողմերն էլ փոխադարձ ոչ բարեկամական հայացքներ փոխանակեցին։

Բայց ահա շրջադարձի հետևից դուրս եկավ կարմիր տրամվայը։ Դեռ հեռվից կարելի էր նկատել, որ առաջին վագոնում մարդ շատ կա։

Յուրիկն իրար խառնվեց, աշխատելով այնպիսի տեղ կանգնել, որ հետո, երբ տրամվայը կանգ առնի, առաջինը ինքը բարձրանա առաջին վագոնի երկրորդ դռնից։ Այնուամենայնիվ նա չկարողացավ գուշակել. առաջին վագոնը անցավ նրա մոտից, և ուղևորները միանգամից գրոհի դիմեցին։ Տղաների պայուսակները շատ էին խանգարում։ Ֆեդյան ա:տիճանի վրայից քիչ էր մնում ցած ընկներ, բայց ինչ-որ մեկը նրան ներս հրեց։

Վերջապես, երբ դռները շրխկոցով փակվեցին, և տրամվայը առաջ շարժվեց, Յուրիկն ու Ֆեդյան, գործի գցելով արմունկները, սկսեցին մոտենալ դրամարկղին։ Այստեղ կանգնած էր մի շեկ տղա, այն տղաներից մեկը, որոնց նկատեցին կանգառում։ Թեև Յուրիկը սեղմվեց, բայց տղան չշարժվեց տեղից, ասես կպած լիներ դրամարկղին։

— Մի կո՛ղմ քաշվիր,— ասաց Յուրիկը և ուսով հրեց շեկլիկին։

Սա նայեց կկոցած աչքերով, բայց տեղից չըշարժվեց։ Յուրիկն ավելի ուժեղ հրեց։

— Մի կո՛ղմ քաշվիր, ասում եմ...

Այդ ժամանակ շեկլիկը երկու ձեռքով բռնեց Յուրիկի օձիքից և մոտեցրեց դրամարկղին։

— Դե, վճարի՛ր արժեքը։

Յուրիկը թափ տվեց իրեն և ազատեց օձիքը։

— Պա՜հ, գլխիս պարեկ է դարձել,— ասաց նա։

— Ես հենց պարեկ եմ, որ կամ,— պատասխանեց շեկլիկը։

— Ստո՛ւմ ես, ե՛ս եմ պարեկ,— գոռաց Յուրիկը։— Ֆե՛դյա, մո՛տ արի։

— Գալիս եմ,— պատասխանեց Ֆեդյան, բայց չկարողացավ առաջանալ։

Այդ պահին լսվեց շեկլիկի ընկերոջ ձայնը.

— Ինքնակո՜չ։ Ափսոսում է երեք կոպեկը։



Ֆեդյան, որ դեռ կանգնած էր ուղևորների արանքում, չհամբերեց...

— Ինքնակոչը ինքներդ եք...

Ուղևորները ծիծաղեցին։

— Լսու՞մ եք, տղանե՛ր,— հարցրեց մորուքավոր մի մարդ, որի թավ հոնքերի տակից ուրախ փայլում էին գորշ աչքերը։— Դուք ի՞նչ պարեկներ եք ձեզ երևակայում։ Ու՞մ եք բռնելու...

— Նրանց, ովքեր առանց վճարելու են գնում։ Ահա թե ում,— ասաց Յուրիկը։

Վերջապես նրան հաջողվեց մի քիչ սեղմել շեկլիկին։ Բայց սա չզիջեց։ Շեկլիկն ու իր ընկերը ուս-ուսի տված՝ կանգնեցին դրամարկղի մոտ, ստեղծելով ամուր պաշտպանություն։ Պարզ

էր, որ առանց մարտի նրանք դիրքերը չէին զիջի:

Բոլոր կողմերից ծիծաղում էին տղաների վրա: Իսկ մի մորաքույր դրամարկղի մեջ փող գցելիս կատակով ասաց.

— Դե, պարեկ, հաշվիր կոպեկները...

Եվ վերարկուով մի բարձրահասակ ուղևոր վրդովված դիմեց հարևաններին.

— Սա ի՞նչ բան է, քաղաքացինե՛ր: Դուրս է գալիս, որ պիոներները ինձ հետևելու համար են եկել: Սա վիրավորանք է...

Նրան պատասխանեցին ընդհանուր ծիծաղով: Եվ հանկարծ բարձրախոսից լսվեց վագոնավարի խռպոտ ձայնը.

— Դրամարկղի մոտ կանգնած տղանե՛ր, խնդրում եմ ազատեք վագոնը: Մեզ վերահսկիչ պետք չէ:— Եվ մի փոքր դադարից հետո ծիծաղելով ավելացրեց.— Դե, տղանե՛ր, արդեն կանգառն է, շտապե՛ք... Քաղաքացինե՛ր, ճանապարհ տվեք թող իջնեն:

Մեկ րոպե հետո չորս տղաներն էլ ներքևում կանգնած նայում էին սլացող տրամվայի հետևից:

— Եվ ինչու՞ դուք խցկվեցիք մեր վագոնը,— Յուրիկին սպառնալից ասաց Շեկլիկը:

— Իսկ ձեզ հանձնարարե՞լ են, որ պարեկություն անեք,— պատասխանեց Յուրիկը:

— Պետք է հասկանայիր. չէ՞ որ ես անմիջապես դրամարկղի մոտ կանգնեցի:

Ֆեդյան լուռ լսում էր փոխադարձ նախատինքները: Նա արդեն ոչ մի ցանկություն չուներ կատարելու այդ «կարևոր հանձնարարությունը»: Շեկլիկն ու իր ընկերը, որ ուրիշ դպրոցի աշակերտ էին, ավելի կայուն դուրս եկան: Նրանք բարձրացան հետևյալ տրամվայը, բռունցքներով սպառնալով Ֆեդյային ու Յուրիկին:

Յուրիկի տրամադրությունը նույնպես փչացավ: Նրա ամբողջ մարտական եռանդը հօդս ցնդեց:

— Գնա՛նք տուն,— հանկարծ առաջարկեց նա:— Լավ է, որ մեզ դեռ միլիցիա էլ չտարան:

Եվ նրանք ետ դարձան, հոգնած թափահարելով պայուսակները:

Հանկարծ Յուրիկի գլխում միտք ծագեց.

— Իսկ վաղը Կլավդիա Սեմյոնովնային կասեմ, որ հայրս թույլ չտվեց: Եվ վե՞րջ: Ի՞նչ պիտի անի ինձ:

— Ո՛չ, ես կասեմ այն, ինչ եղել է,— մտածելով, վճռեց Ֆեդյան:

— Իսկ ի՞նչ:

— Կասեմ, թե ինչպես մեզ դուրս արեցին վագոնից:

— Այդ դեպքում մեզ վրա կծիծաղեն:

— Թող ծիծաղեն: Բայց չէ՞ որ ճշմարտություն է:

Յուրիկն անհանգստացավ: Ո՛չ, ավելի լավ է՝ գնալ և սուտ-սուտ բաներ փչել: Ասել, թե ստիպել են վճարել քսանյոթ պառավի, տասը աղջկա և երկու ինքնակոչ տղայի, որոնք իրենց պարեկ էին համարում (նա ակամայից հիշեց Շեկլիկին): Ոչ ոք ոչինչ չի ասի, դեռ դրուժինայի խորհրդում կգովեն...

— Ո՛չ, դու չե՛ս ասի,— ասաց նա համառորեն:

Ֆեդյան կկոցած աչքերով նայեց նրան:

— Չե՛մ ստի:

Յուրիկը քմծիծաղ տվեց:

— Ֆեդյա, դու վատ ընկեր ես...

— Թող ինձ ուղարկեն ավազակ բռնելու,— գոռաց Ֆեդյան,— չեմ վախենա... Բայց չե՛մ ստի:

Նրանք կանգնած էին դեմ-դիմաց: Մեկը կարճահասակ, մյուսը՝ բարձր: Անցորդներն անցնում էին, առանց ուշադրություն դարձնելու վիճող տղաների վրա: Քի՞չ տղաներ են վիճում փողոցներում. հո կռիվ չե՞ն անում:

— Դու պիտի լռես,— համոզում էր Յուրիկը, կրծքով հրելով Ֆեդյային:

— Չե՛մ լռի:

Յուրիկը բարձրացրեց իր մեծ բռունցքը:

— Վերջին անգամ եմ ասում... լռի՛ր...

Այդ պահին Ֆեդյայի հարվածը նրան կպցրեց պատին: Շփոթված Յուրիկը վախից նույնիսկ ձայն չհանեց: Նա երբեք չէր սպասում, որ այդ փոքրամարմին Ֆեդյան մի հարվածով կարող է իրեն թռցնել տեղից:

— Լսու՞մ ես,— ասաց Ֆեդյան,— կգնաս և ամեն ինչ կպատմես այնպես, ինչպես եղել է, լսու՞մ ես:

Առանց պատասխանելու, Յուրիկը շուռ եկավ և, ուսերը վեր բարձրացրած՝ արագ քայլերով հեռացավ:

Ֆեդյան մնաց տեղում կանգնած:

Գուցե այդ րոպեին երկրի վրա ծնվեց ամուր կամքի տեր ևս մի նոր մարդ, որի համար սարսափելի չեն դժվարությունները և որի համար թանկ է ճշմարտությունը: Բայց գուցե նա արդեն կար և միայն հիմա դարձավ ավելի ուժեղ:

### ՆՐԿԱՄՅԱԿԻ ԳՈՐԾԵՐԻՑ

Հայաստանի պիոներները հավաքել և պետությանն են հանձնել 6 հազար տոննա մետաղի ջարդոն, որից 4 հազարը Բարեկամության նավթամուղի համար (Վոլգա-Կենտրոնական Եվրոպա):

Տնկել են ավելի քան 800 հազար ծառ ու թուփ:

Կառուցել և կարգի են բերել 420 սպորտային հրապարակ:

Խնամել ու աճեցրել են ավելի քան 13 հազար հորթ, 117 հազար գառ և մոտ 27 հազար ճագար:

Ախուրյանի դպրոցականները ստեղծել են 17 կիլոմետր երկարությամբ «Շիրակի կանաչ գոտի»:

Արտաշատի դպրոցականները հավաքել են 800 տոննա բամբակ, 500 տոննա ճակնդեղ, 200 տոննա խաղող, 20 հազար շիշ, 40 տոննա մետաղի ջարդոն և տարածել են 35 հազար ռուբլու գրականություն (նախկին դրամով):

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԻՈՆԵՐ ԴԱՐՁԱ

*ՆԵԿՏԱՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

1924 թիվն էր... Գավառի կենտրոնից մեր գյուղն էր եկել Հարություն անունով կայտառ ու ժրաջան մի երիտասարդ՝ պիոներական կազմակերպություն հիմնելու համար։ Նա շատ ջանք թափեց, մինչև կարողացավ պիոներական կազմակերպություն ստեղծել։ Սկզբում ծնողները դժվարությամբ էին համաձայնվում, որ իրենց երեխաները պիոներ դառնան, բայց տեսնելով, որ նրանք պիոներական կազմակերպության մեջ ընդգրկվելով ավելի կարգապահ ու աշխատասեր են դառնում, կամաց-կամաց հաշտվեցին այդ մտքի հետ։ Նոր կազմակերպված պիոներական ջոկատները զբաղվում էին զանազան գործերով։ Մեկ տեսնում էիր ժրաջան մեղվի նման հող են բարձրացնում Նարգիզ մորաքույրի տան կտուրը, մեկ Սահակ պապին են օգնության հասնում կարտոֆիլի ցանքսը ժամանակին ավարտելու համար, մեկ գյուղի փողոցներն են կարգավորում։ Երբ գործ չէին ունենում, թմբուկները թնդացնելով, ուրախ երգերով անցնում էին գյուղի նեղ փողոցներով՝ ամենուր կենդանություն սփռելով։

Այդ ժամանակ ես սովորում էի երկրորդ դասարանում և պիոներ դառնալու մեծ ցանկություն ունեի, բայց երբ հիշում էի դպրոց ընդունվելուս պատճառով տատիկիս ու ծնողներիս միջև տեղի ունեցած անախորժությունը, մտածում էի, որ իմ այդ ցանկությունը ավելի մեծ անախորժությունների տեղիք կտա։ Ստիպված, ես հեռվից էի հետևում ընկերներիս և մանկական վառ երևակայությամբ սպասում այն օրվան, երբ իմ վզին էլ կփողփողա ալ կարմիր փողկապը։ Մի օր էլ լուռ կանգնած դիտում էի պիոներների աշխույժ ու կայտառ երթը, ընկեր Հարությունը մոտեցավ ինձ ու հարցրեց.

—Հասմի՛կ, իսկ դու ե՞րբ պետք է պիոներ դառնաս։

Ես ոչինչ չկարողացա պատասխանել, երեսս շուռ տվի, որ նա չնկատի իմ արցունքները և հեռացա։ Երբ տուն հասա, մայրս վազեց ինձ ընդառաջ և, իմ այլայլված տեսքը տեսնելով, իրար հետևից հարցրեց.

—Այդ ի՞նչ է պատահել քեզ հետ, ինչու՞ են աչքերդ կարմրած, չլինի՞ դպրոցում ծեծել են։

Իսկ հայրս ինձ գրկելով, փաղաքշանքով հարցրեց.

—Հը՞, ասա տեսնենք, ի՞նչ է պատահել։

—Հայրիկ, կթողնե՞ք ես էլ պիոներ դառնամ, նրանց վերաբերմունքից սրտապնդվելով հարցրի ես։

—Դրա համա՞ր ես քիթդ կախել... Մի՛ մտածիր, աղջիկս, գնա ասա Հարությունին, որ քեզ էլ պիոներ ընդունի։

—Իսկ տատի՞կը... Նա կթողնի՞,—կամաց հարցրի ես։

—Տատիկին մի կերպ կհամաձայնեցնենք։

Երկար ժամանակ քունս չէր տանում։ Աչքերս բաց հետևում էի լուսնի շողերին, որոնք տան երդիկից ներս էին թափանցել սենյակ ու մանիշակագույն լույսով ողողել ամեն առարկա։ Ինձ թվում էր՝ այդ գիշեր լուսինը ավելի լուսավոր էր ու պայծառ։ Ես ուզում էի շուտ լուսանա։ Սիրտս թրթռում էր այն մտքից, թե վաղը պետք է գնամ ընկեր Հարությունի մոտ ու խնդրեմ, որ ինձ էլ պիոներ ընդունեն։

Արագ հագնվեցի, դուրս եկա տանից ու վազելով հասա եկեղեցու բակը, որտեղ ամեն օր տեղի էին ունենում պիոներական հավաքներ և մարմնամարզություններ։ Այդ բակը միակ հարմար տեղն էր հավաքների համար։ Ես շատ վաղ էի գնացել, բակում դեռ ոչ ոք չկար. Նստեցի քարին ու սրտի թրթռոցով սպասեցի պիոներներին։ Հանկարծ ականջիս հասավ տատիս ձայնը, և ողջ մարմնովս սարսուռ անցավ։ Արագ բարձրացա տեղիցս ու շուռ եկա ձայնի ուղղությամբ։ Իմ կողմն էին գալիս տատս ու մեր գյուղի քահանան։ Նրանց տես-



նելով՝ քարացա տեղումս: Մոտեցան ինձ... տատս բռնեց ձեռքիցս ու, դառնալով դեպի տեր Սիմոնը. ասաց.

—Տեր հայր, օրհնիր թոռիս, որ էտ կանգնի չար ճանապարհից, էդ ձախ-աջ անող Հարությունը սրան էլ է մոլորեցրել:

—Մո՛տ եկ, որդիս,—ասաց քահանան ու ձեռքը պարզեց, որ դնի գլխիս:

Ես էտ մղեցի նրա ձեռքը ու, որքան ուժ կար ոտքերումս, փախա եկեղեցու բակից:

Ճանապարհին հանդիպեց ընկեր Հարությունը մի քանի պիոներների հետ. Նրանք գնում էին հավաքի: Կանգնեցրին ինձ ու, տեսնելով իմ այլայլված վիճակը, ընկեր Հարությունը հարցրեց.

—Ի՞նչ է պատահել, Հասմիկ, այդ ու՞ր ես այդպես փախչում:

—Տատի՛կս, տերտե՛րը...—հազիվ թոթովեցի ես:

—Ի՞նչ տատ, ի՞նչ տերտեր. հետո՞ ինչ, որ այնտեղ են: Գընանք տեսնենք ի՞նչ են անում նրանք, որ դու այդպես վախեցել ես, —ու բռնելով ձեռքս՝ տարավ իր հետ:

Երբ եկեղեցու բակ հասանք, ոչ ոք չկար, եկեղեցին փակ էր, բոլորը զարմացած նայեցին ինձ. զարմացած էի և ես:

—Երևի աչքիդ են երևացել,—ասաց պիոներներից մեկը ծիծաղելով:

—Չէ՛, չէ՛, ընկեր Հարություն, ես տեսա նրանց, տատս խնդրեց տերտերին, որ նա օրհնի ինձ, վատ ճանապարհից էտ կանգնեցնի, բայց հայրիկս համաձայն է, որ ես պիոներ ընդունվեմ:

Մինչ ես ուզում էի էլի ինչ-որ բան ասել, խնդրել, որ անպայման ընդունեն, Հարությունը դարձավ պիոներներին, որոնք այդ ժամանակամիջոցում լրիվ հավաքվել էին, հրահանգեց շարվել:

Մի ակնթարթում կազմվեց շարքը. թմբկահարը, որը միշտ քայլում էր շարքի առջևից, սկսեց



Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԻՆԱՍՅԱՆԻ

թմբկահարել ու առաջ գնաց, նրա հետևից շարժվեցին բոլոր պիոներները:

— Ձա՛խ-աջ, ձա՛խ-աջ,—հրահանգեց Հարությունը, և երեխաները կանոնավոր քայլերով մի քանի պտույտ կատարեցին եկեղեցու բակում: Ես հեռու կանգնած դիտում էի նրանց ու մտածում: «Ինձ էլ չեն ընդունի, ես պիոներ լինել չեմ կարող, ա՜խ, տատի, տատի»:

—Ձա՛խ-աջ. կա՜նգ ա՛ռ:

Այս հրահանգի վրա դադարեց թմբուկի ձայնը, և բոլոր պիոներները ուղիղ կագնեցին իրենց տեղում:

– Երեխանե՛ր.— դիմեց ընկեր Հարությունը պիոներներին,— այսօր Հասմիկին պետք է ընդունենք պիոներական շարքերը. համաձա՞յն եք:

—Համաձայն ենք, ընկեր Հարություն, համաձայն ենք,—միաբերան գոչեցին բոլոր երեխաները:

—Իսկ հիմա թող Հասմիկը պիոներական երդում տա:

Բայց ես այնքան էի շփոթված, որ անգիր սովորած երդումից հազիվ կարողացա մի քանի բառ ասել:

Ամեն կողմից պիոներները հուշում էին, բայց ես ոչինչ չէի լսում: Ամոթից մինչև ականջներս կարմրել էի, երեսս վառվում էր, սիրտս արագ էր խփում, ինձ թվում էր, որ հիմա դուրս կգա տեղից: Տեսնելով շփոթված վիճակս, ընկեր Հարությունը Գուրգենին հասկացրեց. որ դուրս գա շարքից: Գուրգենը մոտեցավ ինձ, վզկապը կապեց ճպարանոցիս ու, պատվի բռնելով, գոչեց.

—Պիոնե՛ր, պատրա՛ստ:

—Միշտ պատրա՛ստ եմ,—պատասխանեցի ես հուզմունքից դողացող ձայնով ու գնացի դեպի շարքը:

# ԱՌԱՋԻՆ ԾԱՂԻԿՆԵՐԸ

## ԱՐՇԱՎԻՐ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*Սիրելի երեխաներ, ես վաղուց ուզում էի պատմել ձեզ առաջին ծաղիկների մասին, բայց չէի կարողանում որոշել, թե ինչի՞ց սկսել ու ինչպե՞ս պատմել, որ հետաքրքիր լինի: Վերջապես որոշեցի պատմել այնպես, ինչպես եղել է:*

*Ես մի ընկեր ունեի, անունը Շմավոն: Նա ուներ ածուխի պես սև աչքեր ու զանգուր մազեր: Լավ լողանում էր գետում, բոլորից արագ էր վազում, ճարպիկ էր, թեթև: Նա մեր շատ խաղերի կազմակերպիչն էր: Դրա համար էլ սիրում էինք նրան:*

Ովքեր եղել են Բասարգեչարում, տեսած կլինեն, որ գյուղի միջով հոսում է մի գետ: Շըմավոնենց տունը գետի մի կողմում էր, իսկ մերը՝ մյուս:

Մի քանի օր էր, որ ես ընկերոջս չէի տեսել և մենակ տըխրում էի: Նա գաղտնի ինչ-որ տեղ էր գնում: Վերջապես մի օր էլ մոտեցավ ինձ, բռնեց ձեռքս ու խորհրդավոր ասաց.

— Կգա՞ս...

— Ու՞ր,— զարմացած հարցրի ես:

— Ծաղկոց,— վրա բերեց նա:

Ուսերս թոթափեցի և շվարած նայեցի նրան:

— Գնանք, կիմանաս:

Մենք շուտով հասանք պատկոմների «կլուբը»: Շմավոնը այծի նման թռավ սանդուղքներին, իսկ ես՝ նրա հետևից: Ներս մտնելով՝ ձեռքը դրեց ճակատին, զգաստ կանգնեց և ասաց.

— Ընկե՛ր Դավթյան, ծաղիկ եմ բերել:

Ես, իհարկե, ընկեր Եկյար Դավթյանին ճանաչում էի: Նա մեր գյուղի գյուղսովետի նախագահի տղան էր: Այժմ նա Երևանի № 20 բաներիտ դպրոցի դիրեկտորն է: Այն ժամանակ նա պատկոմ էր, ակտիվ հասարակական աշխատանք էր կատարում պատանիների շրջանում: Նա ինձ ճանաչում էր, դրա համար էլ իսկույն համաձայնվեց ու ասաց.

— Այսօրվանից դու ծաղիկ ես: Վաղը կգաս ծաղկոց և կկանգնես երրորդ ծաղկեփնջում:

Այսպես, ես դարձա երրորդ ծաղկեփնջի ծաղիկ: Դա 1923 թվականին էր:

Այժմ, սիրելի երեխաներ, իմացեք, որ այժմյան հոկտեմբերիկների փոխարեն, մենք փոքրիկներս կոչվում էինք ծաղիկներ: Մեր տաս հոգուց կազմված խումբը կոչվում էր ծաղկեփունջ, իսկ պատկոմների «կլուբին» կից մեր սենյակը՝ ծաղկոց:

Ուրեմն, մենք այն ծաղիկները չէինք, որ բացվում էին Բասարգեչարի լեռնային հրաշալի մարգագետիններում, սարերի փեշերին ու դաշտերում: Մենք սովետական աշխարհի առաջին ծաղիկներն էինք, որ պետք է բացվեինք ու դառնայինք պատկոմներ (այսինքն պատանի կոմունարներ), կոմերիտականներ, իսկ այնուհետև՝ կուսակցականներ: Հին աշխարհի փլատակների վրա էին աճել այդ ծաղիկները: Նրանցից ըզգացվում էր նոր աշխարհի, սովետական աշխարհի բուրմունքը:

Մեր ծաղկոցում օրինական կարգ ու կանոն էր հաստատված: Այնտեղ էինք լինում գրեթե ամբողջ օրը: Իսկ երբ ծաղկեփնջերով պատկոմների հետ որևէ տեղ արշավի էինք գնում, ծաղկոցում մնում էին միայն հերթապահները:

Մեզ համար պատկոմները կազմակերպում էին խաղեր, հետաքրքիր երեկոներ, կարդում էին գրքեր:

Մենք պատկոմների պես …գնում էինք կարճ շալվար և կապտավուն սատինից վերնաշապիկ, գլխներիս դնում էինք կարմիր և կապույտ կտորից կարված թասակ:

Այդ օրից անցել է 40 տարի: Ես դարձա պատկոմ, դարձա լենինյան կոմերիտական, այնուհետև կոմունիստական կուսակցության անդամ: Իրականացան նոր աշխարհի կառուցման մեր ձգտումները: Ես ինքս մասնակցեցի այդ գործին: Այդ ուղիով անցան գրեթե այն ժամանակվա բոլոր ծաղիկներն ու պատկոմները: Նրանցից շատերը դարձան կուսակցական ու սովետական աշխատողներ, ագրոնոմ, բժիշկ, գրող, գիտնական: Ես դարձա ժուռնալիստ: Նրանցից շատերը քաջաբար կռվեցին Հայրենական պատերազմում հիտլերյան հրոսակախմբերի դեմ, շատերը զոհվեցին Հայրենիքի պաշտպանության համար: Իմ ընկեր Շմավոնը, այդ համարձակ պատանին, որ ինձ առաջնորդեց ծաղկոց, դարձավ սավառնորդ, կատաղի մարտերից մեկում նա ընկավ հերոսի մահով, որ միշտ աճեն մեր Հայրենիքում «ծաղիկները», միշտ բուրեն մեր երկրի «ծաղկանոցները»:

Անցել է 40 տարի: Եվ յուրաքանչյուր անգամ, երբ տեսնում եմ հոկտեմբերիկների ու պիոներների շարքերը, հիշում եմ Սովետական Հայաստանի առաջին ծաղիկներին, հիշում եմ մեր գյուղի երեք ծաղկեփնջերը և ծաղկոցը:

## ՆՐԱՆՔ ՎԵՐԱԴԱՐՁԱՆ...

ԱՐՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ

Մի գարնան առավոտ նրանք թողեցին հարազատ դպրոցը և գնացին հեռու: Պատերազմ էր: Նրանց թվում էր, թե իրենք անպայման կվերադառնան: Բոլորն էլ ապրել էին ուզում, բոլորն էլ երազներ ունեին, բոլորն էլ ուզում էին վերադառնալ: Բայց չվերադարձան...

Քառասուներկու թիվն էր: Այդ օրից անցել է քսան տարի: 19 տարեկան էին նրանք: Անցել է 20 տարի, բայց դեռ մնում են 19 տարեկան... Եվ այն երեխաները, որոնց լեզուն այն ժամանակ նոր էր բացվում, հիմա տարիքով ավելի մեծ են նրանցից:

և չեկան այն տասնինըամյա կենսասերները: Միայն նրանց մայրերն են սպասում, թե մի հրաշքով կգան: Սպասում են...

Պատերազմ էր: Գարուն էր, բայց պատերազմ:

Հիմա էլ գարուն է, հիմա էլ գեղեցիկ են գարնան առավոտները, հիմա էլ իր տեղում է դպրոցը, հիմա էլ կան նրանց ուսուցիչները, հիմա էլ Զորագետն անցնում է վշշալով, ու հայրենի քաղաքն էլ կոչվում է Ստեփանավան:

Բայց որքա՜ն բան է փոխվել հիմա:

Միայն չի փոխվել մայրերի հավատը...

* *

Դրուժինայի հավաքույթը նշանակված էր դպրոցի բակում: «Խիստ կարևոր բան են հայտնելու» —նախապես այսքանը գիտեին պիոներները:

Իսկապես, ի՞նչ են հայտնելու:

Երևի՝ նորից ծառատունկի մասին: Բայց չէ՞ որ առանց դրան էլ իրենք մասնակցում են ծառատունկին: Շուրջ 150 հազար ծառ են տնկել Շահումյանի անվան միջնակարգ դպրոցի պիոներները Զորագետի ափին:

Գուցե ծաղկանոցի համար են կանչել: Գուցե ծաղկի նոր տեսակներ գտնելու կոչ պիտի անեն: Բայց չէ՞ որ իրենք 80 տեսակի ծաղիկներ են աճեցրել և ծաղկի ցուցահանդեսում գրավել առաջին տեղը...

Անսովոր լուրը հուզեց բոլորին: Դպրոցի բակում իջավ քար լռություն: Դպրոցի դիրեկտորը և ավագ ջոկատավարները հայտնեցին, որ դպրոցի այն սաները, որոնք զոհվել են Հայրենական Մեծ պատերազմում, մայիսի 19-ին՝ պիոներական կազմակերպության 40-ամյակի օրը, կլինեն դպրոցի բակում...

—Ահա այստեղ կկանգնի նրանց հուշարձանը,— ասացին նրանք,— իսկ պատվանդանի վրա ոսկե տառերով կգրվեն նրանց անունները...

Ուրախությամբ շաղախված մի տխրություն անցավ շարքերի միջով, շատ սրտամոտ ու նվիրական մի թրթիռ խաղաց բոլորի սրտերում:

Ապա պիոներներն առացան հանձնարություններ, զոհվածների հարազատներից վերցնել լուսանկարներ, հուշեր, կազմել ալբոմ, ցուցափեղկ...

Կարմիր վզկապներով պիոներները մտնում էին նախօրոք նշանակված տունը: Նրանք խնդրում էին զոհված հերոսի լուսանկարը, որը հաճախ միակն էր լինում: Մայրերը լաց էին լինում, բայց պատից իջեցնում էին սիրելի մասունքը.

—Տարե՛ք, թող բոլորն էլ տեսնեն:

Բոլորն անհամբերությամբ սպասում են այդ օրվան, մայիսի 19-ին: Շատերը նույնիսկ պատկերացնում են այդ օրը, կհավաքվեն հերոսների հարազատներն ու ընկերները, հանդիսավոր լռության մեջ կիջեցնեն հուշարձանի ծածկոցը, և սպասող մայրերը կտեսնեն իրենց որդիներին ու շնորհակալ սրտով կշշնջան՝

—Վերջապես, վերադարձան նրանք...



# ԿՅԱՆՔԻ ԴՊՐՈՑՈՒՄ

*ԼԻԱ ԲԱԼԱԴՅԱՆ*

*Միջանցքի ծայրի ցեմենտե աստիճանները իջնում են դպրոցի ներքնահարկը: Այդտեղ, երկար կիսախավար միջանցքի մի անկյունում, դարսված են հին նստարաններ, գործածությունից դուրս եկած զանազան աշակերտական պիտույքներ:*

*Առաջին հայացքից թվում է, թե հետաքրքիր ոչինչ չկա այդտեղ, բայց այդ տպավորությունը անմիջապես ցրում է անսովոր աղմուկը, որ լսվում է փակ դռների հետևից: Մետաղին հարվածող մուրճերի համաչափ թխթխկոցներին միախառնվում են խարտոցների, ռանդաների, կարի մեքենաների միատոն ձայները: Այդ խառնաշփոթ աղմուկի միջից հանկարծ տիրապետող զնգում է էլեկտրական սղոցի սուր, ճղճղան ձայնը:*

*Այդտեղ են տեղավորված դպրոցի մետաղամշակման, փայտամշակման և կար ու ձևի արհեստանոցները:*

*Հնչում է դպրոցական զանգի թրթռուն, ուրախ ձայնը: Մի պահ ամեն ինչ լռում է, և հանկարծ աղմուկով բացվում են արհեստանոցների դռները, ու կիսախավար միջանցքը մեկեն կենդանանում է: Դռներից դուրս են հորդում առատ լույսի լայն շերտեր, որոնք փայլուն, թեթև փարագույրների նման փռվում են գետնին, կարծես ջերմությամբ լցնում ցուրտ միջանցքը: Այդ լույս փարագույրները ճեղքելով դուրս ու ներս են անում աշակերտները:*

*Ահա տղաներն զգուշորեն միջանցք են բերում արդեն պատրաստի մի դպրոցական նիկելապատ*

հանդերձակախիչ, որ պատրաստել են 8-րդ «ա» դասարանի աշակերտները, մետաղամշակման արհեստանոցի վարիչ Գուրգեն Վարդանյանի ղեկավարությամբ:

— Կամաց, դռանը մի՛ խփիր, է՜,— բացականչեց փոքրիկ դեմքով, արագաշարժ աչքերով մի տղա:

— Արան մի տես, ձեռքերը գրպանն է դրել ու հրամաններ է տալիս,— ատամների արանքից թունոտ ասաց երկար հասակով, զունատ դեմքով տղան, բայց նրա խոսքը կիսատ մնաց: Հանկարծ նրա ձեռքից դուրս պրծավ կախիչը և թափով գետնին կընկներ, եթե չլիներ այդ փոքրիկ դեմքով պատանին: Նա առաջ նետվեց ու բարակ ձեռքերով պահեց ծանր կախիչը: Մի պահ շփոթված տղաները նրան օգնության հասան: Բայց հարվածից տղայի ձեռքերը խիստ ցավեցին: Նա կնճռոտեց դեմքը և սևեռած նայեց երկար հասակով, նիհարավուն դեմքով ընկերոջը:

Վերջապես տղաները կախիչը դուրս բերեցին միջանցք և դրեցին պատի տակ: Քանի՜-քանի՜ հանդերձային այդպիսի կախիչներ են պատրաստել դպրոցի արհեստանոցում Աշոտը, Միհրանը, Վազգենը, Ռուբիկը, Սուսաննան և շատ ուրիշ



աշակերտներ, 32 տեղանոց կախիչի 24 գործողությունները այնպես լավ գիտեն նրանք, որ, թվում է, այլևս ոչինչ չկա սովորելու: Բայց ամեն անգամ, գործի անցնելիս ինչ-որ հետաքրքիր գաղտնիք է բացվում նրանց համար:

— Որակ, աշխատանքի կուլտուրա,— մատը բազմանշանակալից թափ տալով, սիրում է կրկնել վարպետ Գուրգենը,— որակ ստանալու համար պետք է ամենափոքր թերությունն իսկ աչքաթող չանել, աշխատել այնպես, որ գործը մատների տակ եռա:

* * *

Անուշիկը թխամազիկ գանգուրներով մի աղջիկ է, մանրիկ, ծիծղուն աչքերով և վարդագույն դեմքով: Այդ օրը նա դասարան մտավ մի մեծ փաթեթ ձեռքին:

Անցավ առաջին դասամիջոցը, հետո երկրորդը: Երբ երրորդ զանգը հնչեց, և դասը վերջացավ, Անուշիկի գրասեղանին մոտեցավ նրա մտերիմ ընկերուհին.

— Այդ ի՞նչ է,— հետաքրքրված հարցրեց նա:

— Դիպլոմս...

— Քեզ համա՞ր, տեսնեմ:

Անուշիկը, ընկերուհուն կտորը ցույց տալու նախնական հաճույքի զգացումից շառագունելով, դարակից շտապ հանեց փաթեթը, բացեց, և փոքրիկ բառակտորներով թավշե նրբերանգ կտորը ծանրորեն կախվեց աղջկա ձեռքից:

Ընկերուհու աչքերում զմայլանք կար:

— Հայրիկս երեկ գնեց, վաղը իմ տարեդարձն է: Ինքս պիտի կարեմ: Ուզում եմ հագուստս ձեր մի քիչ լավը լինի:

Նա լռեց ու արագ ավելացրեց.

— Ներքևը նեղ, իսկ վերևում ծալքեր, հետո երկու մեծ, սպիտակ կոճակ:

— Մի խոսքով, սիրել,— արհամարհական բերթը կնճռոտեց աղջիկը:

Անուշիկը վիրավորվեց, բայց ոչինչ չասաց:

Վերջին դասամիջոցին 7-րդ «ա» դասարանի աղջիկները շտապով իջան դպրոցի կար ու ձևի արհեստանոց: Դա մի ընդարձակ, արևոտ սենյակ է: Մեծ, երկար սեղանների վրա դարսված են զանազան մոդաների ժուռնալներ, մկրատներ, քանոն, կավիճ: Պատի տակ շարված է կարի ութ մեքենա. արդուկելու համար հատկացված է ընդարձակ անկյուն: Պատերին փակցված են գծագրեր, աշակերտների ձեռքերով կարված զգեստներ, ձեռագործներ:

Ուսուցչուհի Եղիսաբեթ Դայանը մոտեցավ յուրաքանչյուրին, դիտեց նրանց աշխատանքը, խորհուրդներ տվեց: Անուշիկը փաթեթը դրել էր սեղանին և սպասող հայացքով հետևում էր ուսուցչուհուն:

— Ինչքան գեղեցիկ կտոր է,— ուսուցչուհին նայեց շիկնած աղջկան ու ժպտաց,— քեզ շատ կսա-



Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

գի։ Իսկ հագուստի ձևը որոշե՞լ ես։

— Ոչ,— կամացուկ շշնջաց Անուշիկը և նայեց ընկերուհուն։

— Դա շատ կարևոր է։ Ապա, երեխանե՛ր, եկեք որոշենք, թե հագուստի ինչպիսի ձև ընտրենք Անուշիկի համար։

Աղջիկները հետաքրքրությամբ սկսեցին թերթել ժուռնալները։ Ապա ընտրելով մի օրինակ, ցույց տվեցին ուսուցչուհուն։

— Այս ձևը անշուշտ գեղեցիկ է,— ուշադիր նայելով ասաց Դայանը,— բայց այժմ մի պահ պատկերացրեք Անուշիկին այս հագուստով։ Դերձակը աշխատում է գեղեցիկի համար, որպեսզի մարդիկ հագնվեն ճաշակով, որպեսզի վայելուչ լինի նրանց արտաքինը։ Իսկ ձևը ընտրածը չի սազի Անուշիկին, չէ՞ որ նա աշակերտուհի է և ոչ թե 30 տարեկան տիկին։ Մենք պետք է Անուշիկի տարիքին համապատասխան համեստ ու գեղեցիկ ձև ընտրենք։

Ինչպես միշտ, դասը շատ հետաքրքիր անցավ։ Եվ երբ զանգը հնչեց, աշակերտուհիները ափսոսանքով թողեցին արհեստանոցը։

Երևանի Շիրվանզադեի դպրոցի աշակերտները մեծ սիրով են պարապում տնարարության առարկան։ Նրանք բացի կարել սովորելուց, պատրաստում են նաև համեղ խմորեղեններ, պահածոներ և շատ ու շատ օգտավետ խորհուրդներ ստանում։

* * *

Վարպետ Գուրգենը բարձրահասակ է, լայնաթիկունք։ Նրա չորացած, կապտավուն շրթերի արանքում բարի ժպիտը կարծես պահ է մտել և թվում է անա դուրս կշողա ու կլուսավորի նրա թուխ դեմքը։ Նա սիրում է ստեղծագործությունը և ավելի շատ՝ երեխաներին։ Այդ սերը զգացվում է ամեն ինչում, նույնիսկ այն ժամանակ, երբ նա զայրանում է. մի բան, որ շատ հազվադեպ է պատահում։ Սիրում է, երբ իրեն հարցեր են տալիս, երբ աշխատանքի ոգևորությունը համակում է աշակերտներին։ Այդպիսի պահերին նրա բարի ժպիտը դուրս է շողում շրթերի արանքից և լայնորեն ներկում ամբողջ դեմքը։ Ամեն մի այդպիսի հաղթանակ նրան հոգու բավարարություն է պատճառում և ապահովում ամբողջ օրվա բարձր տրամադրությունը։

Անա թերևս այդ բանի համար էլ շատ է սիրում ակնոցները քթի ծայրին կախված, բարձրահասակ, հպարտ դեմքով, 7-րդ դասարանցի Սենյորա Գյուլբուդաղյանին։

— Աղջիկը որտե՞ղ, ստեղծագործությունը որտե՞ղ,— ասել էր Սենյորան, երբ առաջին անգամ մտել էր դպրոցի փայտամշակման արհեստանոցը։ Նա անբավականությամբ նայել էր շուրջը և հրաժարվել աշխատել։

Այդպես շարունակվել էր նաև հաջորդ դասերի ժամանակ։ Եվ ինչպե՞ս էր պատահել, որ այդ համառ աղջիկը հանկարծ սկսել էր աշխատել։ Հավանաբար այն պատճառով, որ մտնել փայտամշակման արհեստանոցը և չաշխատել հնարավոր չէ։ Աշխատանքի հմայքը իր գրավիչ, անտեսանելի թևերով բռնում է օծիքից և ստիպում սիրել կատարած գործը։

Հոգ չէ, որ այդ ակնոցավոր աղջիկը մինչև այժմ էլ չի փոխել իր կարծիքը։ Նա կանգնած էլեկտրական սղոցի առաջ, տղամարդու վստահությամբ տախտակ է սղոցում, սղոցում է գլուխը բարձր բռնած ու ասում.

— Աղջիկը որտե՞ղ, ստեղծագործությունը որտե՞ղ։

Արհեստանոցի վարիչ Գուրգեն Իսրայելյանը ներողամտաբար ժպտում է. նա իր փոքրված աչքերով տեսնում է, թե ինչպես աղջկան համակել է աշխատանքի ոգևորությունը։

Երբ հարցնում են արհեստանոցի վարիչ Գուրգեն Իսրայելյանին, թե ովքեր են առանձնապես լավ սովորում, նա կկոցում է աչքերը և թվում աշակերտների անունները՝ Անահիտը, Քնարիկը, Գոհարիկը, Սուսաննան, Գայիկը, Վրեժը, Արտաշը և շատ ուրիշներ։ Ազգանունները նա չի հիշում։

Դա հսկայական մի ցուցակ է, իսկ վարպետի համար նրանցից յուրաքանչյուրը մի-մի հաղթանակ է, մի-մի ոգևորություն։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջի էջը՝*
*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

**Այս համարի հետ բաժանորդներին անվճար տրվում է «Պիոներների մրցանակակիրները» հավելվածը։**

# ԴՈՒ ՎԱՌՎԻՐ, ԽԱՐՈՒՅԿ...

ՍԱՐԳԻՍ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

*(Հայկական ՍՍՌ վաստակավոր ուսուցիչ, Պիոներների պալատի դիրեկտոր, Ա. Խանջյանի անվան ջոկատի ջոկատավար)*

Սովորաբար պիոներական ջոկատի կյանքը ավարտվում է այն ժամանակ, երբ պիոներները անցնում են կոմերիտմիության շարքերը։ Այլ կերպ դասավորվեց այն ջոկատի կյանքը, ուր ինձ վիճակվեց աշխատել։ Ահա իններորդ անգամն է, որ փոխվում է պիոներների կազմը, իսկ ջոկատը դեռ ապրում է, որպես մի միասնական կոլեկտիվ, իր անփոփոխ, տարեց-տարի ամրապնդվող տրադիցիաներով։ Այս ջոկատի գոյության ամբողջ տարիների ընթացքում դեռ ոչ մի պիոներ նույն դասարանում չի մնացել։

1932 թվականին, երբ առաջին անգամ մտա Մաքսիմ Գորկու անվան դպրոցը՝ փոխարինելու հին ջոկատավարին, երեխաները ինձ սառը ընդունեցին: Բայց հետո մտերմացան ինձ հետ, իսկ այդ միանգամից չեղավ։

Հիշում եմ մի այսպիսի դեպք. երրորդ օղակը ջոկատի խորհրդի նիստում Գրիշա Աբալյանին պիոներական շարքերից վտարելու հարց դրեց, որովհետև նա չէր մասնակցում հավաքույթներին։ Որոշեցինք խորհրդի նիստը տեղափոխել Աբալյանենց տուն։ Պարզվեց, որ Գրիշան տանն ուներ իսկական արհեստանոց և ամբողջ ժամանակ հափշտակված աշխատում էր այնտեղ։

Շուտով ջոկատի խորհրդի հետ միասին որոշեցինք հավաքույթ անցկացնել «Ի՞նչ եմ երազում ես» թեմայով։ Բոլոր պիոներներին նախազգուշացրինք, որ միմյանցից գաղտնի պահեն այն, ինչ պատրաստում են հավաքույթի համար: Մեկ ամիս հետո տեղի ունեցավ հավաքույթը։ Երեխաներից ոմանք բերել էին ինքնագործ մոդելներ, նկարներ, քանդակներ, ձեռագործներ, մակետներ, ոմանք էլ իրենց բանաստեղծություններն էին կարդում։

Այդ հավաքույթից հետո արդեն պարզ էր, թե ինչով կարելի է գրավել պիոներներից յուրաքանչյուրին։ Խմբակներ ստեղծելիս, հավաքույթներ, երեկույթներ ծրագրելիս, պիոներական զանազան գործեր նախաձեռնելիս, ես արդեն միշտ և ամեն բանում հենվում էի երեխաների ձգտումների վրա։

Հպարտությամբ կարող եմ ա́սել, որ իմ նախկին պիոներներից շատերը իրենց կոչումը գտան այն բանում, ինչ նրանց գրավել


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ՍԼ. (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕԶԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—52—06*

*ՎՖ 02035 Պատվեր 585. Տպաքանակ՝ 10500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 4/V 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 20 կ.

ԹԱՄԱՐԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ
(Երևան, № 70 դպրոց, 3-րդ դասարանի աշակերտուհի, 10 տարեկան)

ԱՐԵՎՈՏ ՕՐ



ՎԱՐՍԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Արտաշատի շրջան, գյուղ Մխչյան, 7-րդ դասարանի աշակերտուհի, 13 տարեկան)

ԾԱՂԻԿՆԵՐ

ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԻ ՆՎԵՐ «ՊԻՈՆԵՐԻ» ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻՆ

## „Պիոներ" մրցանակակիրները

Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության 40-ամյակի առթիվ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարել էր պատանիների ստեղծագործությունների բաց մրցանակաբաշխություն։

Մրցանակաբաշխությանը մասնակցեցին 221 երեխա, ներկայացնելով ավելի քան 700 ստեղծագործություն։

Առաջին կարգի մրցանակ շնորհվեց ԿԱՐԻՆԵ ՉՈՄՅԱՆԻՆ (Երևան) և ՎԱՀՐԱՄ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻՆ (Երևան)։

Երկրորդ կարգի մրցանակ շնորհվեց ԴԱՎԻԹ ԷՅԼԱԶՅԱՆԻՆ (Ղափան), ԳԱՅԱՆԵ ՄԱՆՈՒԿՅԱՆԻՆ (Երևան), ՆԵՆԵ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻՆ (Երևան), ՄՈՆԱ ԿԱՐԱՄԱՆՅԱՆԻՆ (Երևան), ՍԵԴԱ ԲԵՔԱՐՅԱՆԻՆ (Երևան), ՍՈՒՍԱՆՆԱ ԱՎԱԳՅԱՆԻՆ (Աբովյան, Ջրաբեր)։

Երրորդ կարգի մրցանակ շնորհվեց ՎԱՀԱՆ ՔՈՋԱՐՅԱՆԻՆ (Երևան), ԱՆԱՀԻՏ ՍՏԵՓԱՆՅԱՆԻՆ (Երևան), ԱԼՅՈՇԱ ԳԵՎՈՐԳՅԱՆԻՆ (Թալին), ՆՎԱՐԴ ՍՈՂՈՄՈՆՅԱՆԻՆ (Լեռնային Ղարաբաղ), ՄԱՆՈՒԿ ՆԱԶԱՐՅԱՆԻՆ (Հրազդան), ԹԱՄԱՐԱ ԳԱՍՊԱՐՅԱՆԻՆ (Երևան), ՎԻՈԼԵՏԱ ԴԱՎԹՅԱՆԻՆ (Երևան), ԳԱՅԱՆԵ ՕՀԱՆՅԱՆԻՆ (Իջևան, Աչաջուր), ԺԱՍՄԵՆ ՄԻՐԶՈՅԱՆԻՆ (Լեռնային Ղարաբաղ), ՎԱՐՍԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆԻՆ (Արտաշատ, Մխչյան), ԱՆԱՀԻՏ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻՆ (Լենինական), ԳՈՒՐԳԵՆ ՄԽԻԹԱՐՅԱՆԻՆ (Երևան)։

Մրցանակաբաշխության ժյուրիի որոշմամբ խրախուսանքի արժանացան ԳԱԳԻԿ ԱԶԱՏՅԱՆԸ (Նոյեմբերյան, Կողբ), ԼՈՒՍԻԿ և ՍՈՒՐԻԿ ՍԱՐՈՅԱՆՆԵՐԸ (Թալին, Արտենի ավան), ԼԵՎՈՆ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ (Երևան), ԿԱՐԻՆԵ ՔՈՋԱՐՅԱՆԸ (Երևան), ՀԵՆՐԻԿ ԲԱԽՉԻՆՅԱՆԸ (Թբիլիսի), ՄԵԼԻՔՍԵԹ ՋԻԳԵՐՋՅԱՆԸ (Երևան), ՄԱՐՏԻՆ ՏՈՆՈՅԱՆԸ (Լենինական), ՀՌԻՓՍԻԿ ՍԻՄՈՆՅԱՆԸ (Լենինական), ԱՐՄԵՆ ՈՍԿԱՆՅԱՆԸ (Հարավսլավիա, Բելգրադ), ՀԵՐՄԻՆԵՆ (Եգիպտոս, Կահիրե), ԷՍՖԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ (Նոյեմբերյան, Ղոշղոթան), ՎԻԿԻ ԵՍԱՅԱՆԸ (Եգիպտոս, Կահիրե), ԼԱԼԱ ՄԱԼԽԱՍՅԱՆԸ (Ապարան, Քուչակ), ԱՇՈՏ ՎԱՐԴԱՆՅԱՆԸ (Թալին, Աշնակ), ԱՆԱՀԻՏ ԴԱՎԹՅԱՆԸ (Երևան), ԱՆԱՀԻՏ ԹՈՒԹՈՒՆՋՅԱՆԸ (Երևան), ԴԱՐՈՒՃ ՋԱՄԲԱԶՅԱՆԸ (Լենինական), ԱՐԱՄ ԲԵՆԵՐՋՅԱՆԸ (Երևան), ԳԱՌՆԻԿ ՊՈՂՈՍՅԱՆԸ (Մարտունի, Ալուչալու), ՌՈԶԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ (Աշտարակ, Լուսակերտ), ԳԱԼԻԼԵՅ ԶՈՐՈՅԱՆԸ (Նոյեմբերյան), ՇՈՂԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆԸ (Լենինական), ՌՈՒԶԱՆ ՆԱՍԻԲՅԱՆԸ (Նոյեմբերյան), ԱՐՏԱՇԵՍ ՇԱՀՎԵՐԴՅԱՆԸ (Ալավերդի, Թումանյան Բանավան), ՍԱՆԱՍԱՐ ԿՈՇԻՆՅԱՆԸ (Կիրովական, Համզաչիման), ԱՅԾԵՄԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԸ (Լենինական), ՌԱԴԻԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ (Սևան, Ցամաքաբերդ), ԷԴՈՒԱՐԴ ՍԻՄՈՆՅԱՆԸ (Երևան), ԿԱՐԱՊԵՏ ՍԱՐԳՍՅԱՆԸ (Լենինական), ՀԱՄԼԵՏ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ (Իջևան, Աչաջուր), ՀԱԿՈԲ ՄԱՐԿՈՍՅԱՆԸ (Երևան), ԱՇՈՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ (Երևան)։

Մրցանակներ շահած և խրախուսանքի արժանացած պատանի ստեղծագործողները պարգևատրվել են լուսանկարչական ապարատներով, ինքնահոս գրիչներով, նկարչական պիտույքներով, գեղարվեստական գրքերով։



ՎԻՈԼԵՏԱ ԴԱՎԹՅԱՆ
Երևան, Պուշկինի անվան
դպրոց, 2-րդ դասարանի
աշակերտուհի, 8 տարեկան)

ՁՄԵՌ

## ՀԱՅՐԵՆԻՔ

Ես ապրում եմ քո գրկում,
Իմ ծաղկավառ Հայրենիք,
Քե՛զ եմ սիրում ու երգում,
Հզոր ես դու, անառիկ։

Ողջ աշխարհում քեզ նման
Չկա՛ ուրիշ մի երկիր,
Կյանքի արև դու անմար,
Խաղաղության ջահակիր։

ԳԱՌՆԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ
(Մարտունու շրջան, Ալուչալու գյուղ,
8-րդ դասարան, 15 տարեկան)



«ՊԻՈՆԵՐԻ»
ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ

# ԵՍ ԱՅՍ ԿԱՐՃ ՇՐՋԱԶԳԵՍՏԸ ԷԼ ՉԵՄ ՀԱԳՆԻ...

*Ես աշխատում եմ քայլել զգաստ ու ձգված։ Զեփյուռը տարուբերում է իմ գիսակները և երբեմն էլ չարաճճի տղայի պես քաշքշում փեշերիցս։ Հեռվում, մի ինչ-որ տեղ բարձրաձայն սուլում է սարյակը։ Թվում է, թե ոչ մի արտասովոր բան չկա։ Սակայն այս գարունը և՛ նման է, և՛ բոլորովին էլ նման չէ մյուս գարուններին։ Նա իր հետ, հատկապես ինձ համար մի լավ, շատ լավ բան է բերել, թե ինչ՝ ես չեմ կարողանում հասկանալ։ Միայն թե արտասովոր ուրախ եմ այսօր։ Մարդիկ էլ բոլորովին կարծես փոխվել են։ Չգիտեմ ինչու բոլորը, բոլո՜րը այնպես սիրելի են թվում. Նույնիսկ հանրահաշվի ուսուցչուհին, որը միշտ ինձ «երկուս» է դնում, այսօր նա էլ բոլորովին ինձ չար չթվաց։ Ես դանդաղեցնում եմ քայլերս։ Դեղձենիների բուրմունքից գլուխս պտտվում է։ Հանկարծ ես զգում եմ, թե ինչքան լավ է ապրելը։*

*Ես միայն նոր եմ զգում, թե ինչու հատկապես այս գարունը բոլորովին նման չէ մյուս գարուններին։ Ես այլևս երեկվա հիմար աղջիկը չեմ։ Շարունակում եմ քայլել։ Ուզում եմ մի այնպիսի արտակարգ բան անել, որ բոլոր մարդիկ հասկանան, որ ես արդեն մեծ եմ։ Քայլում եմ մայթի աջ եզրով։ Մի փոքրիկ աղջիկ շենքի մուտքի մոտ կանգնած՝ իր սև ու կլոր աչքերով ինձ է նայում։ Նա երևի նախանձում է ինձ։ Չէ՞ որ նա էլ կուզենար ինձ պես մեծ լինել։ Եվ անսահման հպարտությունից սիրտս ուռչում է։*

*— Մի տեսե՜ք, ինչ կարճ շոր է հագել,— հեգնում է մի տղա ետևիցս։ Ես ուզում եմ շուռ գալ և մի լավ նրան խեթել, բայց հանկարծ հիշում եմ, որ արդեն մեծ եմ, տղաների հետ էլ փողոցում կռվելը ամոթ է։ Եվ հետո նա*



ԿԱՐԻՆԵ ՋՈՄՅԱՆ
(Երևան, 6 տարեկան)



ՎԱՀՐԱՄ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
(Երևան, Շիրվանզադեի անվան դպրոց, 5-րդ դասարանի աշակերտ, 12 տարեկան)



ՍՈՒՍԱՆՆԱ ԱՎԱԳՅԱՆ
(Աբովյանի շրջան, գյուղ Ջրաբեր, 6-րդ դասարանի աշակերտուհի ,12 տարեկան)

ճիշտ է ասում՝ իմ շորը արդեն կարճ է։ Ախ այդ մայրիկը։ Նա ամեն անգամ ինձ համար նոր շոր կարելիս կրկնում է. «Փոքրիկ աղջիկները պետք է կարճ շոր հագնեն»։

Ես հանկարծ գլխի եմ ընկնում, թե ինչու են բոլոր մարդիկ շուռ գալիս և խորհրդավոր ժպտում։ Իմ հագուստը շատ, շատ կարճ է։ Եվ ես հևասպառ վազում եմ դեպի տուն։ Ահա աստիճանները, դուռը, զանգի կոճակը. և ես կարմրած ու շնչասպառ ներս եմ ընկնում և մայրիկին վճռական ասում.

— Այս կարճ շրջազգեստը էլ չեմ հագնի։

ԳԱՅԱՆԵ ՄԱՆՈՒԿՅԱՆ
(Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 8-րդ դասարանի աշակերտուհի, 15 տարեկան)

## ՁՄՐԹԱՆ ԵՐԵԿՈ

Լեռներն են հիմա մշուշում նիրհել.
Ճամփան փայլում է ինչպես հայելի.
Փոքրիկ կածանն է անտառում կորել՝
Առած իր ուսին հետքերը գայլի։

Եվ փաթիլները իջնում են դանդաղ,
Իջնում երազուն, ծածկում տուն ու բակ,
Ու մեղմ երեկոն փռվում է խաղաղ՝
Ճերմակ դաշտերը առած թևի տակ։

ՍՈՒՍԱՆՆԱ ԱՎԱԳՅԱՆ
(Աբովյանի շրջան, գյուղ Ջրաբեր, 6-րդ դասարանի աշակերտուհի, 12 տարեկան)



Գարնանային ծաղիկներ

ԱՅԾԵՄԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ
(Լենինական, Հակոբյանի անվան դպրոց, 3-րդ դասարանի աշակերտուհի, 9 տարեկան)

## ԼԵՆԻՆ

Բերեցիր դու երջանկություն
Բոլոր, բոլոր մարդկանց համար.
Դու՝ մեր սրտի ծով խնդություն.
Դու՝ մեր բախտի աստղ անմար։

Քեզ սիրում են, մեր հայր Իլյիչ,
Մանուկները բյուր-անհամար.
Չեմ խնայի, մեծ ուսուցիչ,
Կյանքս քո մեծ գործի համար։

# ԴԵՂՁԱՆԻԿԸ

Կանաչ այգում, որտեղ աճում են մեխակներ, վարդեր, վարդակակաչներ, բարձր բարդու ճյուղին կար մի բույն։ Այնտեղ ապրում էին երեք դեղձանիկ՝ հայրը, մայրը և նրանց փոքրիկ ճուտիկը, որի անունը Ծիածանիկ էր։ Ծիածանիկը գեղեցիկ էր. կուրծքը՝ սպիտակ, վզի շուրջը՝ երկնագույն օղակ, մարմինը՝ բաց կանաչ, թևերը՝ դեղին, գլուխը՝ նույնպես սպիտակ։ Նա այնքան քնքուշ ձայնով էր երգում, որ հարևան բոլոր սոխակները նախանձում էին։

Ծիածանիկը դեռևս թռչել չգիտեր։ Մեն-մենակ նստում էր ճյուղին, սպասում ծնողների վերադարձին։ Մի անգամ քիչ մնաց՝ փորձանք պատահեր։ Սովորականի պես երգում էր, երբ հանկարծ բույնը ցնցվեց. ի՞նչ եղավ. փոթորի՞կ, երկրաշա՞րժ։ Վախեցած թռչունը գլուխը դուրս հանեց բնից և սարսափած ետ քաշվեց։ Ներքևում հավաքվել էին մի խումբ չարաճճի երեխաներ, քարեր էին նետում ծառի ճյուղերին։ Ի՞նչ անել։ Ծնողները պատմել էին, որ լավ երգը հանդարտեցնում է նույնիսկ վայրի գազաններին։ Ուրեմն՝ պետք է երգել, երեխաներին հասկացնել, թե ինչ վատ բան են անում։ Եվ դեղձանիկը երգեց։ Ահա այդ երգի բառերը. «Ես էլ փոքր եմ, ավելի փոքր, քան դուք։ Ես էլ ձեզ պես ուզում եմ ապրել, որովհետև սիրում եմ արև, կանաչ ծառեր, ծաղիկներ։ Ուզում եմ թռչել, տեսնել ամբողջ աշխարհը... Իսկ դուք ուզում եք քանդել մեր բույնը։ Ինչո՞ւ»։

Երգը չօգնեց։ Անսիրտ տղաները շարունակում էին քար նետել։ Նրանք կքանդեին բույնը, եթե այդ ժամանակ չարթնանար հարևանի շունը և կատաղի հաչոցով նրանց չքշեր հեռու։

— Շնորհակալությո՛ւն,— ձայնավեց Ծիածանիկը,— սրանից հետո, երբ դու քնած լինես, ես քեզ համար երգ կասեմ, որ դու գեղեցիկ երազներ տեսնես։ Շնորհակալությո՛ւն։

Շունը կարծես հասկացավ և պոչն ուրախ-ուրախ շարժեց։

Հենց այդ պահին վերադարձան Ծիածանիկի ծնողները։ Երբ կատարվածն իմացան, սոսկալի վախեցան։ Վճռեցին այլևս մենակ չթողնել իրենց փոքրիկին։

— Ավելի լավ կլինի,— ասաց հայրը,— եթե Ծիածանիկը սովորի թռչել։

— Դեռ շուտ է,— առարկեց մայրը,— մեր Ծիածանիկը դեռ շատ է փոքր։



ԳԱՅԱՆԵ ՕՀԱՆՅԱՆ
(Իջևանի շրջան, գյուղ Աչաջուր, 6 տարեկան)

ԳԱՐՈՒՆ



ՌՈՒԴԻԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

(Սևանի շրջան, գյուղ Ցամաքաբերդ, 2-րդ դասարանի աշակերտ) Գ.Ն.Ա.Ց.Բ

— Ի՞նչ արած, ուրիշ ելք չկա,— հառաչեց հայրը։

Մի քանի օր հետո Ծիածանիկին ցույց տվին, թե ինչպես պետք է թռչել։ Փոքրիկ դեղձանիկը թփրտում էր, թփրտում, բայց ոչինչ չէր ստացվում։ Եվ հանկարծ նա անզգույշ շարժումից քարի պես ցած ընկավ։ Ծնողները հուսահատ ճչացին։ Սակայն բարդին ձեռքի պես առաջ պարզեց իր փարթամ ճյուղերը և գրկեց փոքրիկին։ Ծիածանիկի կյանքը փրկված էր։ Հայրն ու մայրը չգիտեին, թե ինչպես հայտնեին իրենց շնորհակալությունը։

— Սիրելի բարդի,— երգեցին նրանք,— դու թույլ ես տվել, որ քո ճյուղերին բույն հյուսենք։ Հիմա էլ փրկեցիր մեր որդուն։ Մենք սրանից հետո ավելի շուտ կարթնանանք, մեր երգով կարթնացնենք քեզ, որպեսզի միասին դիմավորենք արևածագը, բայց չթողնենք արևի ոչ մի շող...

Բարդին քամուց խշշաց, հայտնելով իր ուրախությունը։

Բայց շուտով նոր դժբախտություն եկավ դեղձանիկների գլխին, ամենամեծ դժբախտությունը։ Ահա թե ինչ պատահեց։

Մի անգամ, երբ խոտերի մեջ երեքով սնսոսատում էին, ընկան թակարդ, ինչ-որ սարսափելի մի մարդ հորն ու մորը դրեց վանդակի մեջ, Ծիածանիկին, չգիտես ինչու, խղճաց, բաց թողեց և վանդակը տարավ շուկա՝ վաճառելու։ Ամբողջ ճանապարհին Ծիածանիկը հետևում էր իր ծնողներին։ Շուկայում մի ծեր կին գնեց վանդակը, նստեց ավտոմեքենա և գնաց։ Ծիածանիկն այլևս չկարողացավ հետևել, թե ուր են տանում իր ծնողներին։ Տխուր-տրտում վերադարձավ իրենց բույնը։ Նա այնքան էր տխուր, որ նրա տխրությամբ լցվեց ամբողջ այգին։ Տխրեցին ծառերը, ծաղիկները, խոտերը, այգով անցնող առուն, տխրեցին բոլոր թռչունները։ Դեղձանիկի վշտով տարվեց նույնիսկ արևը, և մարդիկ զարմացան, թե նա ինչու այդքան թույլ է լուսավորում այդ օրը։

Ծիածանիկը երգեց, երգեց, հետո հոգնեց ու քուն մտավ։ Նա տեսավ մի զարմանալի երազ։

Ինքն արդեն մեծացել էր և ծնողների հետ չվում էր դեպի տաք երկրներ։

Արդեն հասել էին Եգիպտոս։ Թռչում էին Նեղոսի վրայով։ Այդքան մեծ գետ Ծիածանիկը երբեք չէր տեսել։ Նստեցին սֆինքսի գլխին՝ հանգստանալու։ Մոտերքով անցնում էին ուղտերի քարավանները։ Այնքա՜ն քաղցր էին ղողանջում զանգակները։ Ծիածանիկը փորձեց իր երգը նմանեցնել այդ ղողանջին։ Եվ... և հանկարծ արթնացավ։ Նա ավելի վշտացավ։ Վճռեց ամեն գնով գտնել իր ծնողներին և ազատել գերությունից։ Իսկույն թռավ դեպի քաղաք։ Քանի օր չարչարվեց։ Տնից-տուն էր թռչում, ներս նայում ամեն պատուհանից։ Արդեն հուսահատվել էր, երբ հանկարծ մի բարձր տան պատշգամբներից մեկում տեսավ ծանոթ վանդակը։ Պատշգամբը ապակեպատ էր։ Ի՞նչ անել։ Ոչ մի կերպ ներս մտնել չէր կարողանում։ Խփվում էր ապակիներին և ցած գլորվում։ Ծնողները նրան նկատեցին։ Ե՜վ ուրախացան, և՜ տխրեցին։

— Փախի՛ր, փախի՛ր, Ծիածանիկ,— ձայն տվին նրանք,— քեզ էլ կբանտարկեն։

— Ոչ, ես մենակ ապրել չեմ ուզում,— պատասխանեց Ծիածանիկը,— կամ ձեզ կազատեմ, կամ ինքս էլ գերի կհանձնվեմ։

Հենց այդ պահին Ծիածանիկը նկատեց, որ վերևի օդանցքը բաց է։ Ուրախացած ներս թռավ, վրա ընկավ վանդակին։ Ծնողները երկաթե ճաղերից կտուցները քսում էին իրենց որդու փափուկ փետուրներին, ոտքերին... Ծիածանիկի ոտքը կպավ վանդակի դռնակին, և դռնակը բացվեց։ Ա՜յ քեզ հրաշք։ Դեղձանիկները վայրկենապես դուրս թռան և սլացան դեպի իրենց սիրելի այգին, իրենց հարազատ բույնը։ Ի՜նչ երջանկություն՝ լինել ազատ, ապրել ազատ, երգել ու թռչել ազատ...

ՎԱՀՐԱՄ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ
(Երևան, Շիրվանզադեի անվան դպրոց, 5-րդ դասարանի աշակերտ, 12 տարեկան)

ԺԱՍՄԵՆ ՄԻՐԶՈՅԱՆ
(Լեռնային Ղարաբաղ, Ստեփանակերտի շրջան, գյուղ Աղբուլաղ, 6-րդ դասարանի աշակերտուհի, 12 տարեկան)

ԿՈՎ



## «ՊԻՈՆԵՐԻ» ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



ՆԵՆԵ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆ

*(Երևան, 34-րդ դպրոց, 4-րդ դասարանի աշակերտ, 11 տարեկան)*



ԴԱՎԻԹ ԷՅԼԱՋՅԱՆ

*(Ղափան, № 1 միջնակարգ դպրոց, 8-րդ դասարանի աշակերտ, 15 տարեկան)*



ԳԱՅԱՆԵ ՄԱՆՈՒԿՅԱՆ

*(Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 8-րդ դասարանի աշակերտուհի, 15 տարեկան)*



## ԱՌՈՒՆ

Ինձ գարունն է աշխարհ բերել,
Ե՛վ սնել է, և՛ գուրգուրել,
Ես առուն եմ, զվարթ առուն,
Ծաղկով, խոտով միշտ զարդարուն,
Ջուրս մաքուր, ճամփաս արձակ,
Խոխոջում եմ արևի տակ
Ու ջրում եմ թուփ ու ծաղիկ
Թեկուզ փոքրիկ, թեկուզ փոքրիկ։
Բայց չեմ մնա այսպես բարակ,
Ես առու չեմ մի հասարակ,
Կմեծանամ, կդառնամ գետ
Ու կծփամ ծովերի հետ։

## «ՊԻՈՆԵՐԻ» ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ





ՍԵԴԱ ԲԵՔԱՐՅԱՆ

(Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, առաջին դասարանի աշակերտուհի, 8 տարեկան)



ՄՈՆԱ ԿԱՐԱՄԱՆՅԱՆ

(Երևան, № 77 դպրոց, 8-րդ դասարանի աշակերտուհի, 14 տարեկան)

ԷԴՈՒԱՐԴ ՍԻՄՈՆՅԱՆ

(Երևան, Կրուպսկայայի անվան դպրոց, 6-րդ դասարանի աշակերտ, 13 տարեկան)

ԲՆԱՆԿԱՐ ԳՅՈՒՂԻՑ



ՎԱՀԱՆ ՔՈՋԱՐՅԱՆ

(Երևան, Աղայանի անվան դպրոց, 6-րդ դասարանի աշակերտ, 12 տարեկան)

ՍՎԱՐԴ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ

(Լեռնային Ղարաբաղ, Մարտունու շրջան, Կարաքենդի միջն. դպրոց, 7-րդ դասարանի աշակերտուհի, 14 տարեկան)

## ՈՐՄՆԱԴԻՐԸ

Քար է տաշում որմնադիրը,
Պատ է շարում որմնադիրը,
Վրան նախշ ու զարդ է անում,
Ողկույզներ է քարից հանում,
Հետն էլ անուշ երգ է ասում,
Կարծես քարի հետ է խոսում։

ԳԱԼԻԼԵՅ ԶՈՐՈՅԱՆ
*(Նոյեմբերյան, 7-րդ դասարանի աշակերտ)*




Նորից կարդում եմ ես քո նամակը,
Ու սիրտս է լուին թախծում այնպես.
Ուսման դռները քո առաջ փակ են
Լոկ նրա համար, որ փող չունես։

Կարծես տեսնում եմ ջինջ արցունքներդ
Ջորացած ճերմակ թղթի վրա,
Աշխատանք չկա, գործազուրկ հայրդ
Որտեղի՞ց արդյոք փող ՚ունենա։

Բայց մի՛ ընկճվիր, իմ հեռավորս,
Շուտով կդառնաս դու հայրենիք.
Էլ արցունքով չի անցնի քո օրը,
Կլինես ուրախ ու երջանիկ։

ՌՈՒԶԱՆ ՆԱՍԻԲՅԱՆ
*(Նոյեմբերյան, 9-րդ դասարանի աշակերտուհի, 15 տարեկան)*

ԿԱՐԱՊԵՏ ՍԱՐԳՍՅԱՆ
*(Լենինական, Շահումյանի անվան դպրոց, 5-րդ դասարանի աշակերտ)*

ԼՃԱՓ

ՍԱՆԱՍԱՐ ԿՈՃԻՆՅԱՆ
(Կիրովականի շրջան,
գյուղ Համզաչիման,
5-րդ դասարանի ա-
շակերտ, 11 տարեկան)

ԳԵՎՈՐԳ ՄԱՐԶՊԵՏՈՒՆԻ

# ՄԱՅԻՍ

Մայիս, իմ չքնաղ,
Հաղթական մայիս,
Կրկին դու եկար,
Բերկրանքի ամիս։

Օրերդ պայծառ,
Անունդ թանկ է,
Կարծես ծաղկավառ
Զգեստ ես հագել։

Այս քո մայիսյան
Գեղեցիկ օրին
Խաղաղություն բեր
Ամբողջ աշխարհին։

ՌՈԶԱ
ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
(Աշտարակի շրջան,
Լուսակերտ ավան,
3-րդ դասարանի ա-
շակերտուհի)։

## «ՊԻՈՆԵՐԻ» ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



ՄԱՆՈՒԿ ՆԱԶԱՐՅԱՆ
(Հրազդան, 7-րդ դա-
սարանի աշակերտ, 15
տարեկան)



ՎԻՈԼԵՏԱ ԴԱՎԹՅԱՆ
(Երևան, Պուշկինի անվան
դպրոց, 2-րդ դասարանի
աշակերտուհի, 8 տա-
րեկան)

## «ՊԻՈՆԵՐԻ» ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



ԳՈՒՐԳԵՆ ՄԽԻԹԱՐՅԱՆ
*(Երևան, № 79 դպրոց, 6-րդ դասարանի աշակերտ, 13 տարեկան)*



ԹԱՄԱՐԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ
*(Երևան, № 70 դպրոց, 3-րդ դասարանի աշակերտուհի, 10 տարեկան)*



ԱՆԱՀԻՏ ՍՏԵՓԱՆՅԱՆ
*(Երևան, 6 տարեկան)*



ԳԱՅԱՆԵ ՕՀԱՆՅԱՆ
*(Իջևանի շրջան, գյուղ Աչաջուր, 6 տարեկան)*



ԱՆԱՀԻՏ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
(Լենինական, Իսահակյանի անվան դպրոց, 7-րդ դասարանի աշակերտուհի, 13 տարեկան)

ՄԵՐ ԴԱՍԱՐԱՆԸ



ԾԱՌԵՐ

ԳՈՒՐԳԵՆ ՄԽԻԹԱՐՅԱՆ
(Երևան, № 79 դպրոց, 6-րդ դասարանի աշակերտ, 13 տարեկան)

# ՁՄԵՐՈՒԿԸ

Աշնանամուտ էր։ Մեր բակում, մեծ ծառի տակ դրված նստարանի վրա խաղում էինք ես և եղբայրս, երբ բակի դուռը աղմուկով բացվեց և շեմքին երևաց մայրս՝ ճամպրուկը ձեռքին։ Մենք ընդառաջ վազելով, վերցրեցինք նրա ձեռքից ճամպրուկը և մոտեցանք նստարանին։ Հանկարծ լսվեց մի ծվծվոց։

Մենք նայեցինք ծառի վրա, բայց ծվծվոցը լսվում էր ճամպրուկից։ Բոլորս զարմացած նայում էինք ճամպրուկի մեջ, որտեղից անընդմեջ լսվում էր մեզ համար զարմանալի ճնճղուկի ձայնը։ Մենք դատարկեցինք ճամպրուկը, և ձայնը կտրվեց, նորից դարսեցինք ճամպրուկի պարունակությունը։ Զարմանալի բան։ Նորից շարունակվում էր ծվծվոցը։ Մենք նկատեցինք, որ մորս ուսերը ցնցվում են ծիծաղից։ Ճամպրուկի պարունակությունը դատարկելիս՝ նկատեցինք, որ նրա մեջ եղած ձմերուկը երբ գլորվելով կպչում է ճամպրուկի կողքին, ձայնը շարունակվում է։

Մայրս ծիծաղելով մեզ ասաց, որ

դա «Հրաշք» ձմերուկ է։ Մենք զարմացած նայում էինք, երբ ձմերուկը գլորվում էր տարբեր ուղղություններով, ձայնը կտրվում էր, իսկ երբ կպչում էր ճամպրուկի կողքին եղած գրպանին, ձայնը կրկին շարունակվում էր։ Եվ մենք դժվար թե գլխի ընկնեինք, թե որտեղ էր թաքնված «ծիտիկը», եթե մայրս չբացատրեր։

Նախքան շուկա մտնելը, մայրս մտել էր մանկական խանութ և այնտեղից գնել մի խաղալիք, որը ծլվլում էր, երբ նրան սեղմում էին։ Նա այն դրել էր ճամպրուկի գրպանը։ Ահա թե ինչու, երբ ձմերուկը կպչում էր ճամպրուկի գրպանին, «ծիտիկը» ծլվլում էր…

Մենք կուշտ ծիծաղեցինք «հրաշք» ձմերուկի վրա և ախորժակով կերանք այն ճաշից հետո։

ՇՈՂԻԿ ԳԵՎՈՐԳՅԱՆ

(Լենինական, Գոգոլի անվան դպրոց, 8-րդ դասարանի աշակերտուհի)



ԱՆԱՀԻՏ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

(Լենինական, Խանջյանի անվան դպրոց. 7-րդ դասարանի աշակերտուհի, 13 տարեկան)



ՆՎԱՐԴ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ

(Լեռնային Ղարաբաղ, Մարտունու շրջան, Կարաբենդի միջն. դպրոց, 7-րդ դասարանի աշակերտուհի. 14 տարեկան)

ՆԿԱՐԸ. ՀԱՍՄԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆ

(Էջմիածնի շրջան, գյուղ Այգեշատ, 5-րդ դասարանի աշակերտուհի)

## «ՊԻՈՆԵՐԻ» ՄՈՒՅԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



ՎԱՐՍԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*(Արտաշատի շրջան, գյուղ Մխչյան, 7-րդ դասարանի աշակերտուհի, 13 տարեկան)*



ԺԱՍՄԵՆ ՄԻՐԶՈՅԱՆ

*(Լեռնային Ղարաբաղ, Ստեփանակերտի շրջան, գյուղ Աղբուլաղ, 6-րդ դասարանի աշակերտուհի)*



ԱԼՅՈՇԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ

*(Թալինի շրջան, գյուղ Վ. Թալին, 7-րդ դասարանի աշակերտ, տարեկան)*



ԱՇՈՏ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ
(Երևան, № 83-րդ դպրոց,
3-րդ դասարանի աշակերտ,
9 տարեկան)
ԳԱՐՈՒՆ

# ԾՈՒՅԼԸ

Գործ ու դասեր թողած այնպես՝
Քարշ է գալիս դրսում մութին,
Առավոտն էլ արջուկի պես
Զարթնում հազիվ ժամը ութին...

Մաճ է գալիս գիրք ու տետրակ
Աթոռներին, սեղանի տակ,
Մինչդեռ ահա այդ միջոցին
Հնչում է զանգը դպրոցի...

Մի կոշիկը հազիվ հագին,
Մեկն էլ դրած թևի տակին,
Տե՛ս, վազում է ծույլը անբան
Եվ ուշանում ամեն անգամ։

ԱՐՏԱՇԵՍ ՇԱՀՎԵՐԴՅԱՆ
(Ալավերդու շրջան,
Թումանյան բանավան,
միջն. դպրոց,
5-րդ դասարան, 11
տարեկան)

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ




ՄԱՆՈՒԿ ՆԱԶԱՐՅԱՆ
(Հրազդան, 7-րդ դասարանի աշակերտ, 15 տարեկան)

ՀԱԿՈԲ ՍԱՐԿՈՍՅԱՆ
(Երևան, № 119 դպրոց, առաջին դասարանի աշակերտ)

ՏՈՆ



էր փոքր հասակից, պիոներական ջոկատում կազմակերպված միջոցառումների ժամանակ։

Պատանի գյուտարար Հրաչիկ Վարդանյանը դարձավ գիտական աշխատող։ Պատանի Կոռնիլովյան հրաձիգ Խորեն Խաչատրյանը Սովետական Միության Հերոս է։ Ֆաբրիկաների ու գործարանների մոդելներ պատրաստող Էդիկ Սադոյանը աշխատում է կոմպրեսորների գործարանում, որպես գլխավոր ինժեներ։ Գրքերի սիրահար Ռաֆիկ Հարությունյանը բանասիրական գիտությունների թեկնածու է։

Սովետական Միությունում հայտնի է բանաստեղծ Գևորգ Էմինը։ Ադիկ Խուդոյանը կոմպոզիտոր է, պատի թերթի նկարիչ Արմեն Աթայանը՝ շնորհալի նկարիչ, ջոկատի նախկին սանիտար Արմեն Մինասյանը՝ բժշկական գիտությունների թեկնածու, կավից ու շաղախից զանազան կենդանիներ պատրաստող Ռաֆիկ Եկմալյանը՝ տաղանդավոր քանդակագործ։

Իսկ այժմ ես ուզում եմ պատմել «Մեկը բոլորի և բոլորը մեկի համար» տրադիցիայի մասին, որը մեր ջոկատի օրենքը դարձավ։

Մի անգամ Լյովան հիվանդ տատիկին խնամելիս եռացրած ջուր էր թափել իր վրա։ Նա երկար ժամանակ դպրոց չեկավ։



Օղակի անդամները իմանալով պատահած դժբախտության մասին, անհանգստացան։ Նրանք հերթապահություն սահմանեցին և ամեն օր դասերից հետո հերթով գնում էին Լյովայի մոտ, բացատրում անցած դասը, միասին պատրաստում տնային առաջադրանքները։ Մեկ ամիս անց, Լյովայի առողջությունը զգալիորեն լավացավ, բայց քայլել դեռ չէր կարող։ Պիոներները սկսեցին Լյովային դպրոց բերել գրկած։ Դա տևեց մոտ մեկ ամիս...



Նման տասնյակ դեպքեր ամրապնդեցին ջոկատում ստեղծված՝ ամեն բանում իրար օգնելու տրադիցիան։

Յուրաքանչյուր հինգ տարին մեկ անգամ՝ ապրիլի 22-ին, Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան օրը, պիոներները հանդիսավոր կերպով հրաժեշտ են տալիս իրենց ջոկատին։ Այդ օրը վառվում է տրադիցիոն խարույկը, որի նշանաբանն է՝ «Պահպանիր ջոկատի պատիվը»։

Բոլոր սերունդների պիոներները ներկա են լինում այդ խարույկին, ով չի կարողանում գալ՝ այդ մասին հաղորդում է հեռագրով կամ նամակով։ Հուզված ու երջանիկ շարվում են մեր ջոկատի ապագա պիոներները։ Հան-



դիսավոր խոստումից հետո ջոկատի նախկին սաները հոկտեմբերիկների վզին կապում են վզկապներ, իսկ այնուհետև ջոկատի խորհրդի նախկին նախագահները իրենց պատանի փոխարինողներին են հանձնում այն բոլոր թանկարժեք նվերները, որ նվաճել է ջոկատը։ Հանդիսավոր հանձնվում են նաև դրոշակը, շեփորը, թմբուկը, օրագրերը և ամբողջ տնտեսությունը։

Իսկ հաջորդ օրը մենք ճանապարհորդություն ենք կատարում այն տեղերը, որոնք կապված են ջոկատի պատմության հետ։ Նախ փոքրիկ ընկերներին ցույց ենք տալիս մանկական երկաթուղու «Հայրենիք» կայարանը և պուրակը, որոնց շինարարությանը մասնակցել է մեր ջոկատը, կազմակերպելով 15 շաբաթօրյակ։

Ավագ ընկերների հետ ճանապարհորդելով՝ փոքրերը ծանոթանում են ջոկատի բոլոր տրադիցիաների հետ, որ պետք է օգնել ընկերներին, վատ սովորելը ամոթ է, յուրաքանչյուր պիոներ պետք է անեցնի 3 ծառ, ուսումնական տարվա սկզբին դպրոց պետք է գալ սեփական ձեռքով պատրաստած նվերներով և պատմել, թե ամառվա ընթացքում ինչ օգտակար բան է արել։

— Պահպանեցե՛ք ջոկատի պատիվը,— հպարտորեն ասում են նորեկներին ավագ պիոներները։— Ամրացրե՛ք ջոկատի տրադիցիաները և ստեղծեցե՛ք նոր՝ ավելի լավ տրադիցիաներ։

Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ

## ՄԱՅԻՍՄԵԿՅԱՆ ԱՌԱՎՈՏ

Մայիսյան թովիչ արևն է շողում,
Եվ դրոշներն են փողփողում բոսոր,
Մարդկանց շարքերն են գետի պես հոսում
Մեր պայծառ երկրի կողմերում բոլոր:
Անցնում են զվարթ, թե մեծ, թե մանուկ,
Խինդն ու բերկրանքը իրենց վառ հոգում.
Հյուսվել են կյանքի ճամփեքը բանուկ
Այս լույս առավոտ մեր Հայրենիքում:
Եվ խնդությունը բոլոր՝ կրծքերից
Ճախրում է երգով, սավառնում է վեր.
Ինչպես նույն մարդկանց ամուր ձեռքերից
Արբանյակներն են սլացել եթեր:
Սրերից հիմա խոփեր են կռում
Իմ Հայրենիքի մարտիկները քաջ.
Եվ աղավնին է երկնքում ճախրում՝
Խաղաղությունը թևերին առած:

ՆՎԱՐԴ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*(Երևան, Պուշկինի անվան դպրոց, 9-րդ դաս. աշակերտուհի)*

## ՏԵՆՉԱՆՔ

Իմ հոգին դեպի անհունն է ձգտում,
Ուզում է լինել բարձունքներում վեհ,
Իմ հոգին այսօր այնպե՜ս է ուզում
Հզոր թևերով եթեր սավառնել:
Ուզում եմ խավար անհունը սուզվել,
Որտեղ միշտ մութ է, անարև, ամպոտ
Սրտիս կրակով մութը փարատել.
Սխրանքների՜ է իմ հոգին կարոտ:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*(Լենինական, № 16 դպրոց, 10-րդ դասարանի աշակերտ)*